

Ապրիլի 22-ին
լրանում է

**ՎԼԱԴԻՄԻՐ
ԻԼՅԻՉ
ԼԵՆԻՆԻ**

ծննդյան
115-ամյակը

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

## Արարատ

Արարատ սա՛ր,
Մեր լեռների
Մեր նախահայր:

Մով երկնքին
Եվ աստղերին
Դու հավասար:

Մեջքին ամպը
Արքայական
Ջիու թամբ է:

Նստեմ թամբիդ,
Ինձ թռցնես,
Տանես վերև,
Արևի մեջ
Դառնանք արև:

Վե՛հ Արարատ,
Մեր աչքի դեմ
Պարզված հեքիաթ:

## Ցորենի հատիկը

Ցորենի հատի՛կ,
Դու ունես տատիկ,
Քո տատիկն էլ է
Ցորենի հատիկ:

Ցորենի հատի՛կ,
Դու ունես պապիկ,
Քո պապիկն էլ է
Ցորենի հատիկ:

Պապիկ ու տատիկ
Հիմա կողք-կողքի
Քնել են հանգիստ
Ծերտերում հողի:

Նրանց սպասիր
Գարնանն արտի մոտ,
Նրանք կծլեն
Մի լույս առավոտ:

ՆԿ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# ՎԱԽԸ

Նկ. ՌՈՒԲԻՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Իններորդ դասարանում ես դեռ փոքրահասակ, նիհարակազմ և թույլ տղա էի: Բոլոր առարկաներից «գերազանց» էի ստանում, բացի ֆիզիկական դաստիարակությունից: Ֆիզկուլտուրայի դասերն ինձ համար տանջանքի ժամեր էին, որովհետև ո՛չ կարողանում էի ձգվել, ո՛չ պտտվել պտտաձողի վրա (ինչպես բոլոր տղաները), ո՛չ թռչել, ո՛չ վազել, ո՛չ բասկետբոլ խաղալ: Իսկ ֆիզիկական դաստիարակության ուսուցիչն ուժեղ, աժդահա տղամարդ էր: Նա անցել էր պատերազմի խիստ ու դաժան ճանապարհներով, շատ մահ ու կործանում տեսել, հոգով կարծրացել: Եվ ինձ չէր սիրում: Քմծիծաղ էր տալիս, մաթեմատիկայի «հինգի» կողքին մեծ «երկուս» էր նշանակում, արհամարհանքով ծիծաղում, երբ պտտաձողից կախված՝ համառորեն ցանկանում էի ձգվել, բայց երկար չարչարանքից հետո թուլացած ցած էի ընկնում:

Նա չարախնդում էր՝ տեսնելով իմ թուլությունը, իսկ տղաներն ու աղջիկները ձայնակցում էին նրան: Եվ ես վախենում էի ֆիզիկական դաստիարակության դասերից, ամոթից ավելի շփոթվում, ու ոչինչ չէր ստացվում: Իսկ նա ամեն անգամ արհամարհանքով ձեռքը թափ էր տալիս ու սեղմած ատամների արանքից ասում.

— Քեզնից ի՞նչ տղամարդ է ստացվելու: Ա՜յ տղա, առավոտները շու՛տ վեր կաց, մարմնամարզությա՛մբ զբաղվիր, մարմինդ շփի՛ր սառը ջրով... Միայն մաթեմատիկայով ու քիմիայով բան դուրս չի գա: Կյանք է, դժվարություններ կան, պատերազմ կա...

Եվ ամեն անգամ տխրում էր: Տխրությունն ու չարությունը խառնվում էին իրար:

Այդպես էր մինչև այն օրը, երբ ես ու նա հանդիպեցինք դաշտում, երկուսով, ուրիշ ոչ ոք չկար, մեզնից և ոչխարապահ շներից բացի: Ես վերադառնում էի դաշտից, իսկ նա գնում էր: Ոչխարի հոտը փռվել էր նոր հնձած ճանապարհամերձ դաշտի մեջ, իսկ ոչխարապահ շները եկել, պպզել էին ճանապարհի մեջտեղը: Չորս մեծ, բրդոտ, կատաղի տեսքով աժդահա ոչխարապահներ: Հեռվից նման էին առյուծների, որ կարծես ցատկի պատրաստ՝ որսի էին սպասում:

Իսկ ես կենդանիներից չեմ վախենում, հատկապես շներից: Մի զարմանալի ներքին զգացողությամբ կենդանիները հասկանում են մոտեցող մարդու մտքերը, տարբերում վախկոտին ու անվախին, բարյացակամին ու չարակամին: Մի զարմանալի, բնածին կարողությամբ ես փոքր հասակից կարողանում եմ ընկալել կենդանիների հոգեվիճակը և իմ հերթին կարծես կարդում եմ նրանց մտքերը: Եվ կենդանի տեսնելիս մի անհասկանալի ուրախություն է տիրում ինձ ու՝ ոչ մի նշույլ վախի:

Հեռվից տեսա մի մարդու, որը անշարժ նայում էր, չկարողանալով կողմնորոշվել՝ ետ վերադառնա՞լ, շրջանցե՞լ, թե՞ ուղղակի առաջ քայլել:

Այդպիսի մարդկանց ես միանգամից ճանաչում եմ՝ նրանք կենդանիներին չեն սիրում և վախենում են նրանցից:

Առանց երկմտելու մոտեցա ճանապարհի մեջտեղում պպզած շներին, սկսեցի շոյել ականջները, շոյել գլուխները: Շները բարի ու վստահող աչքերով ժպտացին, հավաքվեցին շուրջս, սկսեցին պոչերը խաղացնել, բարեկամության ցույցեր անել:

Հեռվում կանգնած մարդը մոտեցավ, բայց չհամարձակվելով անցնել, ինձ ձայն տվեց: Ես շներին սաստեցի ու գնացի նրան ընդառաջ: Աչքերիս չէի հավատում՝ ֆիզիկական դաստիարակության ուսուցիչն էր:

-- Ա՜յ տղա, դու չե՞ս վախենում էդ գազաններից,— ապշահար ասաց նա:



— Չէ՛...— ասացի՝ կախելով գլուխս:

— Չես կծու՞մ,— չէր անցնում նրա զարմանքը:

— Չեն կծում,— չհամարձակվելով բարձրացնել գլուխս՝ պատասխանեցի ես:

— Գլուխդ բարձր պահիր,— գլուխս շոյեց ֆիզկուլտուրայի ուսուցիչը,— դու անվախ տղա ես... Կարող ե՞ս ինձ անցկացնել...

Ֆիզկուլտուրայի ուսուցիչը ապշահար ինձ էր նայում: Ապա կռացավ, ձեռքերի մեջ առավ գլուխս, համբուրեց ճակատս ու ասաց.

— Դու իսկական տղամարդ ես:

Ուրախությանս չափ չկար: Ես վախկոտ չէի, ես տղամարդ էի: Եվ այդ ասում էր ֆիզիկական դաստիարակության ուսուցիչը:

Երբ բաժանվում էինք, նա իր հսկա ափի մեջ առավ զույգ ձեռքերս և ջերմորեն ժպտաց.

— Դու ֆիզկուլտուրայից «հինգ» ես,— և ծիծաղելով ավելացրեց.— Իսկ եղածը մնա մեր մեջ: Թող լինի մեր գաղտնիքը:

Նա հսկայի քայլերով գնում էր դաշտամիջյան ճանապարհով, իսկ ես կանգնած նայում էի նրա ետևից: Սիրտս ուրախությունից դուրս էր թռչում: Թվում էր, թե ո՛չ պտտաձողից եմ վախենում, ո՛չ բասկետբոլի գնդակից, ո՛չ թռիչքաձողից, և բոլոր դժվարությունները կարող եմ հաղթահարել: Ապա ուշքի եկա և վազեցի դեպի գյուղ: Ոտքերս ուժ էին ստացել, մարմնիս կշիռը չէի զգում, մի թռչուն էի, որը վանդակից ազատված՝ ճախրում էր արևի շողերի մեջ, թեթև՛, թեթև՛...

Այդ օրվանից զարմանալի փոփոխություն կատարվեց իմ կյանքում: Ուսուցչիս բոլոր խոսքերն ինձ համար նոր արժեք ստացան, եղան սիրելի ու լեցուն իմաստությամբ: Սկսեցի առավոտները շուտ արթնանալ, վազել, մարմնամարզությամբ զբաղվել, սառը ջրով շփել մարմինս և, որ կարևորն էր, չխուսափել ծանր աշխատանքներից:

Երբ դպրոցն ավարտելուց երկու տարի հետո հանդիպեցինք, իմ ֆիզիկական դաստիարակության ուսուցիչը զինվորական համազգեստի մեջ ինձ հազիվ ճանաչեց: Զարմացած մոտեցավ, ձեռքը մեկնեց ինձ և հիացած ասաց.

— Այն օրվանից ես համոզված էի, որ դու իսկական զինվոր ես:

Եվ մենք հարազատների նման գրկախառնվեցինք:

# ՈՂՋՈՒՅՆ ՓԱՌԱՏՈՆ



**Դեմոկրատական Երիտասարդական Միջազգային Ֆեդերացիայի (ԴԵՄՖ) որոշմամբ 1985 թվականի հուլիսի 27-ից օգոստոսի 3-ը Մոսկվայում տեղի է ունենալու Երիտասարդության և ուսանողների համաշխարհային 12-րդ փառատոնը, որի նշանաբանն է. «Հանուն հակաիմպերիալիստական համերաշխության, խաղաղության և բարեկամության»: Ողջ աշխարհի երիտասարդներն են նախապատրաստվում իրենց մեծ տոնին: Ավագներից ետ չեն մնում և երեխաները: ՍԻՄԵԱ-ի՝ (Մանկապատանեկան կազմակերպությունների միջազգային կոմիտեի) նախաձեռնությամբ աշխարհի բոլոր մանկական կազմակերպությունները մասնակցում են «Ողջո՜ւյն, խաղաղությո՛ւն» համաշխարհային էստաֆետին, որը նվիրված է համաշխարհային 12-րդ փառատոնին: Իսկ ինչպե՞ս է սկսվել փառատոնային շարժումը, ե՞րբ և որտե՞ղ են տեղի ունեցել նախորդ փառատոները: Այս մասին կպատմենք ձեզ մեր ամսագրի էջերում:**

## Ինչպե՞ս սկսվեց

1945 թվականին Լոնդոնում հավաքվել էր աշխարհի առաջադեմ երիտասարդությունը՝ համաշխարհային կոնֆերանսի: Այստեղ ընդունվեց ԴԵՄՖ-ի կանոնադրությունը և որոշվեց պարբերաբար անցկացնել երիտասարդության և ուսանողների համաշխարհային փառատոներ: Սկսվեցին նախապատրաստական աշխատանքները:




## Պրագա 1947

Եվ ահա, Չեխոսլովակիայի մայրաքաղաք Պրագայում տեղի ունեցավ Երիտասարդության և ուսանողների համաշխարհային 1-ին փառատոնը, որին մասնակցում էին աշխարհի 71 երկրներից 17 հազար պատվիրակ: Երիտասարդության համաժողովը, հետադիմական ուժերի ջանքերին հակառակ, դարձավ աշխարհի երիտասարդների միջազգային համերաշխության վառ ցույց: Փառատոնի

մասնակիցները վերականգնեցին ֆաշիստների կողմից հիմնահատակ կործանված Լիդիցե գյուղը, օգնեցին Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Հարավսլավիայի աշխատավորներին՝ վերացնելու պատերազմի հետևանքները:

Փառատոնի օրերին առաջին անգամ հնչեց սովետական կոմպոզիտոր Անատոլի Նովիկովի և բանաստեղծ Լև Օշանինի «Դեմոկրատական երիտասարդության հիմնը»:

Գրեթե մի ամբողջ ամիս՝ հուլիսի 25-ից օգոստոսի 17-ը, Պրագան դարձավ փառատոնային մայրաքաղաք, ուր թագավորում էին երիտասարդական խանդավառ երգն ու պարը: Փառատոնի մասնակիցները կոչ արեցին աշխարհի երիտասարդությանը. «Երիտասարդնե՛ր, առա՜ջ՝ հանուն կայուն խաղաղության»:




## Բուդապեշտ 1949

Առաջին փառատոնից հետո, երկու տարի անց, 1949-ին Հունգարիայի մայրաքաղաք Բուդապեշտում տեղի ունեցավ երկրորդ փառատոնը: Աշխարհի շատ երկրներում երիտասարդները հանգանակություններ էին հավաքում հույն և իսպանացի դեմոկրատական երիտասարդության օգտին՝ հոգալու համար փառատոն գնալու նրանց ծախսերը: Բուդապեշտյան հանդիպման նախօրյակին եվրոպական շատ երկրներով անցան «Խաղաղության քարավանները», որոնք փառատոնի մայրաքաղաք էին բերում երիտասարդության անխախտ կամքը՝ պայքարելու հանուն խաղաղության:

Փառատոնը տեղի ունեցավ օգոստոսի 14-ից 28-ը, մասնակցեցին աշխարհի 82 երկրների 20 հազար ներկայացուցիչներ: Փառատոնի նշանաբանն էր. «Առա՜ջ՝ հանուն կայուն խաղաղության, դեմոկրատիայի, ժողովուրդների ազգային անկախության և լավագույն ապագայի»:

Բուդապեշտում կազմակերպվեց աշխարհի առաջադեմ երիտասարդության կյանքի, աշխատանքի և պայքարի մասին պատմող մեծ ցուցահանդես, որին մասնակցում էին բոլոր պատվիրակությունները: Առանձնահատուկ հաջողություն ուներ սովետական ցուցադրությունը: Մեծ հաջողություն ունեցան և սովետական երիտասարդ արվեստագետները, երգիչները, երաժիշտները, արտիստները: Մեծ էին և մեր մարզիկների հաջողությունները: Նրանք նվաճեցին 115 ոսկե, 42 արծաթե և 30 բրոնզե մեդալներ:




## Բեռլին 1951

Տագնապալի ժամանակներում էր տեղի ունենում Երիտասարդության և ուսանողների 3-րդ համաշխարհային փառատոնը: Շարունակվում էր պատերազմը Կորեայում և Վիետնամում: Միջազգային հետադիմական ուժերը ջանում էին խանգարել երիտասարդներին հավաքվելու փառատոնի մայրաքաղաքում: Ինսբրուկում ամերիկյան ռազմական իշխանությունները կանգնեցրին գնացքը և օրեր շարունակ ջանում էին թույլ չտալ 2 հազար պատվիրակներին մեկնելու Բեռլին:

Սակայն Բեռլինյան փառատոնը, որ աչքի էր ընկնում իր մարտնչող ոգով, տեղի ունեցավ, ու ցուցադրվեց երիտասարդների պայքարելու և հաղթելու կամքը:

Փառատոնի նշանաբանն էր. «Երիտասարդությո՛ւն, միավորվի՛ր ընդդեմ նոր պատերազմի սպառնալիքի՝ հանուն երկարատև խաղաղության»:

Փառատոնի բացման օրը Բեռլինի կապույտ երկնքում թևածեցին 20 հազար աղավնիներ, որոնք մարմնավորում էին երիտասարդների խաղաղության ձգտումը:

Հետաքրքիր էին փառատոնային ծրագրի «Աղջիկների օրը», միտինգները. հանդիպումները, ուսանողների համաշխարհային խաղերը, գեղարվեստական խմբերի ու արվեստագետների ելույթները, որոնց ակտիվորեն էր մասնակցում սովետական պատվիրակությունը: Աշխարհով մեկ հնչեց բեռլինյան փառատոնի մասնակիցների երդման խոսքերը. «Մենք՝ համաշխարհային փառատոնի մասնակիցներս ... հանդիսավոր երդում ենք տալիս՝ խոչընդոտել նոր պատերազմի բռնկմանը ... պայքարել սպառազինությունների մրցավազքի դեմ...»



# «Ծաղիկները նույնպես խաղաղության կողմնակիցներ են...»

Երևանի Ղուկաս Ղուկասյանի անվան պիոներների և դպրոցականների պալատի «Խարույկ» ակումբի անդամների մտահղացումը՝ փառատոնի տոնավաճառ ուղարկել սեփական ձեռքերով պատրաստած խաղալիքները և ստացված դրամը հատկացնել խաղաղության ֆոնդին՝ արժանացել է ՀամԼԿԵՄ Կենտկոմի հավանությանը:

Երիտասարդության և ուսանողների համաշխարհային 12-րդ փառատոնը նախ և առաջ հակաիմպերիալիստական համերաշխության շարժում է, միջուկային պատերազմի դեմ և խաղաղության համար պայքարի մի կարևոր փուլ:

«Խարույկ» ակումբի անդամների պատրաստած մորթուց խաղալիքների հետ փառատոն են ուղարկվում նաև փոքրիկ շշերում տեղադրված բարի մաղթանքներ: Այդ շշերը կհանձնվեն ծովին, որը դրանք կհասցնի աշխարհի տարբեր ծայրերում ապրող մարդկանց:

12-րդ փառատոնի անցկացման տարում խորհրդանշական է դառնում «Պիոներսկայա պրավդա» թերթի հրավերն աշխարհի բոլոր փոքրիկ նկարիչներին մասնակցել մանկական նկարների միջազգային մրցույթին: Այս հրավերն ընդունել են նաև մեր քաղաքի «Խարույկ» ակումբի անդամները: Նկարչական աշխատանքներին իրենց մաղթանքներն են կցել ու Մոսկվա ուղարկել նաև Երևանի № 47 միջնակարգ դպրոցի դրուժինայի խորհրդի նախագահ, ութերորդ դասարանցի Նունե Բագրատյանն ու Մ. Գորկու անվան միջնակարգ դպրոցի չորրորդ դասարանցի Արաքսյա Կլեկչյանը:

«Ես նկարել եմ բազմագույն ծաղիկներ: Ծաղիկները նույնպես խաղաղության կողմնակիցներ են: Եթե պատերազմ բռնկվի, իմ ծաղիկներն այլևս չեն լինի: Թող միշտ խաղաղություն լինի, որպեսզի ամենուր ծաղիկները ծլեն ու ծաղկեն»,— իր աշխատանքն է բացատրում Նունեն: Իսկ Արաքսյան իր աշխատանքն այսպես է մեկնաբանում. «Աղջիկը կապույտ-կապույտ երկնքում է, ձեռքում աղավնի ունի: Աղավնին կտցում է ոչ թե աղջկա մյուս ձեռքի հացահատիկը, այլ որդը: Աղավնին հացահատիկը տալիս է մրջյունին, որպեսզի նա էլ հանձնի հողին. հաց կլինի, աշխատանք ու խաղաղություն»:

# Ես էլ եմ եղել տասներորդցի

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

Հիշում եմ, երբ ես տասներորդում էի, մեր դասղեկը մի օր առաջարկեց դասարանի բոլոր տղաներին փողկապներ կապել: Ծիծաղեցինք, կատակեցինք, բայց... Բայց մյուս օրը բոլորս դասարան մտանք փողկապով: Մեր աղջիկները զարմացած էին, չգիտեին ինչ անել, մեզ հետ ինչպես վարվել, կարծես տասը տարի կողք-կողքի չէինք մեծացել: Մենք մեր աղջիկներին շատ էինք հարգում և երևի դրա համար բոլորս, մեկից բացի, այլևս փողկապ չըկապեցինք: Ինչքան նկատել եմ, մեր դասարանի տղաները հիմա էլ փողկապ կապելու սովորություն չունեն: Մեզ համար մեր աղջիկների համակրանքը վեր էր ամեն ինչից, փողկապ զոհաբերելը մեծ բան չէր:

Երևանի № 102-րդ դպրոց, 10-րդ «Գ»...

Արդեն չափահաս մարդիկ են. 16—17 տարեկան, դասարանում ընդամենը 12 աշակերտ կա:

— Ուսուցչի համար ընդհանրապես ավելի հեշտ է ու հանգիստ՝ թվով քիչ աշակերտ ունեցող դասարանի հետ աշխատել,— ծնողական ժողովի ժամանակ ասում է դասարանի դասղեկ ընկեր Ասլանյանը,— բայց 10-րդ «Գ»-ն իր վարքագծով հերքում է այդ կարծիքը:

Իհարկե, դասղեկը միայն դատապարտողի դիրքերից չէր խոսում, նա մեկ անգամ ևս ծնողների հետ ուզում էր խորհըրդակցել դասարանի ներքին կարգապահության ու ուսման մակարդակը բարձրացնելու հնարավոր միջոցների մասին:

«Կարգապահությո՞ւն, 10-րդ «Գ»-ու՞մ, դասարան չէ, կրակ ու պատիժ է»,— գրեթե բոլոր ուսուցիչները օձիք են թափ տալիս այդ տասներկու հոգիանոց դասարանից:

Նման պարագայում ուսման առաջադիմության մասին խոսք լինել չէր կարող: Բացում ես դասամատյանը. համատարած «3»-ներ ու «2»-ներ, մեկ-մեկ «4»-եր, հազվադեպ «5»-եր: Երկու հոգի են միայն աշխատում լավ սովորել: Մեր այս խոսքերի նպատակը, ինչպես ասում են, սևացնելը չէ: Ամեն դեպքում դա շատ ավելի հեշտ է, քան օգնելը: Ինչպե՞ս անել, որ տասներորդցի տղան, որը վաղը մյուս օրը մտնելու է մեծ կյանք, մեկնելու է զինվորական ծառայության, համարվելու է հայրենիքը պաշտպանողներից մեկը, այսօր չկանգնի ու դաս հարցնող ուսուցչին ամբողջ դասարանի (գուցե նաև իրեն արդեն համակրող մի աշակերտուհու) ներկայությամբ կմկմա՝ պատրաստ չեմ: Պատկերացրեք, եթե այդ հոգեբանությունը շարունակվի, ասենք, զինվորական ծառայության ժամանակ, երեկվա նույն աշակերտը, այսպես ասած՝ պատրաստ չլինի պատվար կանգնել հայրենիքի թըշնամու առաջ, թեկուզ և մեկի պատրաստ չլինելը իր և մեզ վրա կարող է շատ թանկ նստել:

Առանձին-առանձին զրուցում ես դասարանի աշակերտների հետ, վատը չեն թըվում, խոսում են խելացի, անկեղծ, սրախոսում են, կատակում, չես հավատում, որ հենց նրանցից են ուսուցիչները այդքան դժգոհ:

— Դասի ժամանակ մեկ էլ տեսար մեկը մի անմիտ, անհամ ռեպլիկ նետեց, մյուսները արձագանքում են, հոհռում, իրար ծաղրում, վիրավորում, սկսվում է քաոսը...

10-րդ «Գ»-ի դասղեկ ընկեր Ասլանյանը ավարտել է հենց այս դպրոցը և հիմա իր նախկին ուսուցիչների գործընկերն է: Ջանք չի խնայում, որպեսզի դասարանը պատրաստ լինի ավարտական քննություն-




ներին: Բայց միայն նրա ջանալը քիչ է, դասարանն էլ պետք է ջանա ամոթով չըթողնել դասղեկին իր նախկին ուսուցիչների և այսօրվա գործընկերների առաջ:

— Երբ մոտենում է քառորդները փակելու ժամանակը,— ասում է ուսուցիչներից մեկ ուրիշը,— նրանք բոլորը համավոր հարս են դառնում՝ շնորհքով, կուլտուրական, նույնիսկ դաս են սովորում և խնդրում, որ դաս պատասխանելու կանչես, մեկը թե՝ ընկեր այսինչյան, լավ էլի՞, խնդրում եմ, քառորդս «երկուս» մի նշանակեք, հայրիկս հանկարծ որ իմացավ, գիտե՞ք ինձ ինչ կանի, մյուսը թե՝ ընկեր այսինչյան, մայրիկս հիվանդ է, որ իմացավ քառորդս «երկուս»-ով եմ փակել, շատ կազդվի, սրտի նոպա կունենա: Ու նման աղաչանք ու պաղատանքներ:

Մի՞թե հոր անը պետք է տասներորդցուն ստիպի սովորել և կամ ինչպե՞ս է նա իրեն թույլ տալիս մոր հիվանդության վրա առևտուր անել: Ուսման մեջ քո առաջադիմությունը նախ և առաջ քեզ է պետք: Ծնողներիդ էլ ուրախացնում է քո ամեն մի «5»-ը, ինչու՞ ես նրանց զրկում այդ ուրախությունից: Ջանում ես ու չե՞ս կարողանում լավ սովորել:

— «Հինգ» չե՞ք կարող ստանալ,— հարցնում եմ նրանցից մեկին:

— Ենիմ,— խեղճացած ուսերն է վեր քաշում:

Ո՛չ, նրանցից ոչ մեկը խեղճուկրակ չէ: Այդ խորամանկ խեղճուկրակությունը պարզապես տվյալ պահին նրան ձեռք է տալիս: Երևի, ավելի հեշտ է կանգնել ու ասել՝ դաս չեմ սովորել (մանավանդ երբ գիտես, որ դրա վրա ընկերներդ ոչ ուշադրություն են դարձնելու, ոչ էլ ամոթանք են տալու), քան նստել, ջանք թափել, աշխատել ու պարզերես դաս պատասխանել:

Ների՛ք, որ նորից հիշելու եմ մեր դասարանը:

Մեր դասարանի այն միակ տղան, որ փողկապ կրելը շարունակեց, աչքառու էր ու դիմց: Ինչ անեիր՝ ինքնամոռաց ժպտում էր՝ անիմաստ-անիմաստ: Որ ամբողջ դասարանը տխուր-տրտում նստած լիներ, նա էլի ժպտում էր, չէր հարցնում՝ ինչու՞ եք տխուր: Այն ժամանակ, երբ բոլորս փողկապներով դասարան էինք մտել, նա չէր նկատել ու հասկացել, որ մեր աղջիկները մեզ հետ խորթացածի պես են, կարծես տասը տարի իրար կողք-կողքի չէինք մեծացել: Մենք մեր աղջիկներից մեզ օտարացնող այդ փողկապները հաջորդ օրը հանեցինք, իսկ նա հետևյալ օրը և փողկապով էր եկել, հիշում եմ այսօրվա պես, կանգնեց դասարանի մեջտեղ, ժպտաց-ժպտաց ու ասաց՝ էս խի՞ եք գալուստուկները հանել:

Փողկապ կրելու մեջ, անշուշտ, վատ բան չկա: Վատն այն է, երբ մարդը չի տեսնում ու զգում, անտարբեր է, թե ինչպես է իր արածն ընդունում շրջապատը: Եվ ինչու՞ եք արդյոք անտարբեր դասերի՝ գրականության, ֆիզիկայի, երաժշտության հանդեպ: Դուք մեկ օր ինքներդ ձեզ, մտքներիդ մեջ, չե՞ք հարցնում, թե՝ այսինչ մարդը Տերյան է արտասանում, Բախ է լսում, տեսնես ի՞նչ է գտել դրանց մեջ: Տերյանը մի աշխարհ է. Բախը՝ մի ուրիշ, ճանաչիր նրանց ու քո աշխարհի սահմանները կավելանան նաև նրանց աշխարհն ու տարածքները: Ու քո հոգին ավելի ազատ կլինի, ճախրելու ավելի մեծ տարածություններ կունենա: Երևի ձեր ուսման տասը տարիների ընթացքում բոլորդ էլ գոնե մեկ-երկու անգամ «հինգ» ստացել եք: Հիշո՞ւմ եք, թե ինչքան եք ուրախացել այդ օրը: «5»-ի բերածը միայն ուրախություն չէ: Ստացած «հինգը» մեծացրել է նախորդ «երեքների» սահմանը, և ձեր սիրտն ու հոգին ավելի շատ ճախրելու տեղ է ունեցել: Իսկ ի՞նչ կա ավելի ուրախալի, քան այն, երբ սիրտդ ու հոգիդ ճախրելու ավելի մեծ տարածքներ են ձեռք բերում: Ամեն մեկս երևի ծնված օրվանից մեզ հայրենասեր ենք համարում: Իրեն հայրենասեր համարելն ուրիշ բան է, հայրենասեր լինելն՝ ուրիշ բան: Եթե մեր հոգու սահմանները չընդարձակենք, ինչպե՞ս է հայրենասիրությունը, այդ մեծ զգացումը, տեղավորվելու մեր հոգում, առանց հայրենասիրության զգացումի ինչպե՞ս կարելի է ապրել և իրեն մարդ զգալ:

ՅՈՋԱՍ ՆԵԿՐՈՇՅՈՒՍ
(լիտվացի մանկագիր)

# Երկիր Հայաստան

Հեռաստաններում՝
Արարատների վսեմ բարձունքին,
Ես տեսա ճախրող, մի զորեղ թռչուն:
Եվ այդ իմաստուն, այդ հարյուրամյա ու այդ
գեղեցիկ
Արծիվը իր լայն թևերը պարզած,
Թռչում էր դեպի երկիր Հայաստան:
Թռչում էր երկար,
Մինչև որ իջավ գիշերը խռով,
Մարեց արևն ու լուսինը ծագեց.
Գիշերվա մթնով
Ես լուռ մոտեցա իմ պատուհանին
Ու նորից՝ տեսա այդ թռչնին ճախրող:
Արծիվն էր թռչում դեպի Հայաստան:
Թե երազի մեջ,
Թե լուսաբացին

Ես տեսա հանդուգն, նաև հուսահատ
Հզոր արծվի թռիչքը հպարտ:
Վարդագույն լեռներն արթնացել քնից,
Մեկը մյուսին ողջույն էր տվել,
Բայց դեռ արծիվը
Թռչում էր, թռչում դեպի Հայաստան:
Ու ես հասկացա,
Որ այդ արծիվը՝ եղեռնից ցնցված,
Երկար ժամանակ դեռ չի նստելու
Սրբազան լեռան բարձր կատարին:
Արծիվն էր թռչում դեպի Հայաստան:

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼԵԱՆԻ

ՄԻԽԱՅԻԼ ԶՈՇՉԵՆԿՈ

# Տատիկի նվերը

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Տատիկս ինձ շատ էր սիրում: Ամիսը մեկ հյուր էր գալիս մեզ և խաղալիքներ բերում: Խաղալիքներից բացի, բերում էր նաև մի լիքը զամբյուղ կարկանդակ:

Նա ինձ թույլ էր տալիս ընտրել ուզածս կարկանդակը:

Իսկ իմ ավագ քույրիկ Լոլյային տատիկը այնքան էլ չէր սիրում: Եվ նրան թույլ չէր տալիս կարկանդակ ընտրել: Ինքն էր նրան տալիս, որը որ պատահեր: Եվ այդ պատճառով իմ քույրիկ Լոլյան ամեն անգամ թնկթնկում էր և զայրանում ավելի շատ իմ, քան տատիկի վրա:

Մի գեղեցիկ ամառային օր տատիկը եկավ մեր ամառանոցը:

Նա եկավ ամառանոց և, ահա, քայլում է այգում: Մի ձեռքին զամբյուղն է՝ կարկանդակներով, իսկ մյուսին՝ պայուսակը:

Ես ու Լոլյան ընդառաջ վազեցինք տատիկին և բարևեցինք: Եվ տխրությամբ նկատեցինք, որ այս անգամ, կարկանդակներից զատ, տատիկը մեզ ոչինչ չէր բերել:

Այդ ժամանակ իմ քույրիկ Լոլյան ասաց.

— Տատի՛կ, կարկանդակից բացի, ինչու՞ ուրիշ բան չես բերել:

Տատիկը բարկացավ Լոլյայի վրա և պատասխանեց.

— Բերել եմ: Միայն թե անդաստիարակին, որը բացահայտ այդ մասին հարցնում է, չեմ տա: Նվերը կստանա բարեկիրթ Մինյան, որը շնորհիվ իր վայելուչ լռության, աշխարհի ամենալավ տղան է:

Եվ ահա ես հիմարի պես կանգնել և հիացած նայում եմ փայլուն մետաղադրամներին, որոնք դրված են ափիս մեջ: Լոլյան նույնպես նայում է այդ մետաղադրամներին: Եվ ոչինչ չի ասում: Միայն թե նրա աչքերը պսպղում են չարության կրակով:

Տատիկը մի քիչ հիացավ ինձանով ու գնաց թեյ խմելու:

Այդ ժամանակ Լոլյան տակից ուժգին հարվածեց ձեռքիս, այնպես որ իմ բոլոր մետաղադրամները վեր թռան ափիս միջից ու թափվեցին խոտի ու առվակի մեջ:

Ես սկսեցի այնպես բարձր հեկեկալ, որ մոտ վազեցին բոլոր մեծերը՝ հայրիկը, մայրիկը, տատիկը: Եվ բոլորը միանգամից կռացան ու սկսեցին փնտրել ընկած մետաղադրամները:

Երբ բոլոր մետաղադրամները, բացի մեկից, գտնվեցին, տատիկը ասաց.

— Տեսնու՛մ եք, ի՛նչ ճիշտ վարվեցի, որ Լոլյային ոչ մի դրամ չտվեցի: Ահա թե ի՛նչ նախանձոտն է նա: Մտածում է՝ եթե իմը չէ, թող նրան էլ չլինի: Որտե՞ղ է, ի դեպ, այդ չարագործը այս պահին:

Ծեծից խուսափելու համար Լոլյան, պարզվում է, բարձրացել էր ծառը և ծառին նստած լեզու հանելով ջղայնացնում էր ինձ ու տատիկին:

Հարևանի տղան՝ Պավլիկը, Լոլյային ծառից վայր գցելու նպատակով ուզում էր պարսատիկով կրակել նրա վրա: Բայց տատիկը արգելեց այդ, որովհետև Լոլյան կարող էր ընկնել ծառից և կոտրել ոտքը: Տատիկը դրությունը չսրելու համար անգամ ցանկանում էր տղայի ձեռքից պարսատիկը վերցնել:

Այդ ժամանակ, տղան բարկացավ մեր բոլորի, այդ թվում նաև տատիկի վրա և հեռվից պարսատիկով կրակեց:

Տատիկը ախուվախ անելով ասաց.

— Ձեզ դու՞ր է գալիս: Այդ չարագործ աղջկա պատճառով ինձ պարսատիկով հարվածեցին: Ո՛չ, որպեսզի նման պատմությունների մեջ չընկնեմ, այլևս ձեզ մոտ չեմ գա: Ավելի լավ է, դուք ինձ մոտ բերեք իմ սիրելի Մինկային, և ես ամեն անգամ Լոլյայի ջգրու նրան նվերներ կտամ:

Հայրիկն ասաց.

— Լավ: Ես այդպես էլ կանեմ: Միայն թե դուք, մայրի՛կ, իզուր եք գովում Մինկային: Իհարկե, Լոլյան վատ վարվեց: Բայց չէ՞ որ Մինկան էլ աշխարհի լավա-



գույն տողերից չէ: Լավագույնը կլիներ, եթե տեսնելով, որ քույրը չունի՝ իր ունեցած մետաղադրամներից մի քանիսը նըրան տար: Եվ դրանով նա քրոջը չէր մըղի չարության ու նախանձի:

Իր ծառի վրա նստած, Լոլլյան ասաց.

— Իսկ աշխարհի ամենալավ տատիկը նա է, ով նվեր է տալիս երեխաներից ամեն մեկին, ոչ թե միայն Մինկային, որը իր հիմարության և խորամանկության պատճառով լռում է և դրա համար նըվերներ և կարկանդակ ստանում:

Տատիկն այլևս չցանկացավ մնալ այգում:

Եվ բոլոր մեծահասակները գնացին պատշգամբ՝ թեյ խմելու:

Այդ ժամանակ ես ասացի Լոլլյային.

— Լո՛լյա, իջի՛ր ծառից: Ես քեզ երկու մետաղադրամ կտամ:

Լոլլյան իջավ ծառից, և ես նրան երկու մետաղադրամ տվեցի: Եվ լավ տրամադըրությամբ գնացի պատշգամբ ու ասացի մեծերին.

— Բայց և այնպես, տատիկը ճիշտ էր: Ես աշխարհի ամենալավ տղան եմ. ես հենց նոր Լոլլյային երկու մետաղադրամ տվեցի:

Տատիկը, հիացած, ախ-վախ արեց: Մայրիկը նույնպես ախ-վախ արեց: Բայց հայրիկը մռայլվելով, ասաց.

— Ո՛չ, աշխարհի ամենալավ տղան նա է, ով մի լավ բան է անում, բայց արածով չի պարծենում:

Եվ այդ ժամանակ, ես վազեցի այգի, գտա քույրիկիս և էլի մի մետաղադրամ տվեցի: Եվ այդ մասին մեծերին ոչինչ չասացի:

Եվ այդպես Լոլլյայի մոտ եղավ երեք մետաղադրամ, և չորրորդ մետաղադըրամը նա գտավ խոտերի միջից, այնտեղ, որտեղ հարվածել էր ձեռքիս:

Այդ բոլոր չորս մետաղադրամներով Լոլլյան պաղպաղակ գնեց: Եվ երկու ժամ շարունակ ուտում էր, կերավ-կշտացավ ու դեռ էլի պաղպաղակ մնաց:

Երեկոյան նրա փորը ցավեց, և Լոլլյան մի ամբողջ շաբաթ պառկեց անկողնում:

Եվ ահա, երեխանե՛ր, այդ ժամանակից անցել են շատ տարիներ: Եվ մինչև այսօր էլ ես հիանալի հիշում եմ հայրիկի խոսքերը:

Ո՛չ, միգուցե, ինձ չհաջողվեց դառնալ շատ լավը: Դա շատ դժվար է: Բայց այդ բանին, երեխանե՛ր, ես միշտ ձգտել եմ:

Թարգմ. Գ. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

Հեղափոխական պայքարի անկուն գործիչներ Ստեփան Շահումյանն ու Սուրեն Սպանդարյանը, լինելով Վ. Ի. Լենինի մտերիմ ընկերներից ու զինակիցներից, մշտապես գտնվել են քաղաքական պայքարի ակտիվ կենտրոններում, իրենց կյանքը զոհաբերելով ժողովրդի ազատությանն ու լուսավոր ապագային: Նրանց գրչին են պատկանում հեղափոխության գործին նվիրված արժեքավոր աշխատություններ, քաղաքական ջերմ շնչով գրված հրապարակախոսական բազմաթիվ հոդվածներ, ելույթներ:

Ներկայացնում ենք բանտից ու աքսորից գրված նրանց նամակներից՝ ուղղված իրենց զավակներին: Կարելի է համարել, որ այս նամակների հասցեատերերը նույնքան և դուք եք, պատանի՛ ընթերցողներ, այս նամակներում դուք ձեզ համար նույնպես ուսանելի շատ բան կգտնեք:

ԳԵՎՈՐԳ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
պատմական գիտությունների դոկտոր

## ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԻՑ

28 հուլիսի, 1916 թ., Բաքու, Բաիլյան բանտ

«... Իմ թանկագի՛ն Մանեչկա, դու երևի կարոտել ես մեզ: Պետք չէ տխրել, թանկագի՜նս: Աշխատիր ուրա՛խ անցկացնել ժամանակդ և վերադառնալ առողջացած: Ինձ աքսորում են Իրկուտսկի նահանգ: Աշխատում եմ, որ թույլ տան ինքս մեկնեմ աքսորավայր: Հնարավոր է, թանկագի՛ն Մանեչկա, որ քո վերադարձին դեռևս այստեղ լինեմ:

Քեզ դու՞ր է գալիս Շուշին: Վերջին երեք օրը մայրիկը ինձ տեսակցության էր գալիս ամեն օր: Ֆարո* մորաքրոջ հետ եղիր անկե՛ղծ, որևէ բան եթե անհրաժեշտ է, դիմիր նրա՛ն, մի՛ քաշվիր»:

13 օգոստոսի, 1916 թ. Բաիլյան բանտ

«Իմ թանկագի՛ն Մանյա, ես շատ ուրախ եմ, որ քեզ Շուշին դուր է գալիս: Հետաքրքիր է, ինչպիսի՞ն է այն Ջալալօղլիի և Կիսլովոդսկի համեմատությամբ: Որտե՞ղ է ավելի լավ: Արդյոք չե՞ս մրսում, ոտքերդ չե՞ն ցավում առաջվա նման: Այդ մասին դու ոչինչ չես գրում: Վերջին ժամանակներս մայրդ ու երեխաները շաբաթը երեք անգամ այցելում են ինձ...

*) Ֆարոն հայտնի հեղափոխական Բոգդան Կնունյանցի քույրն էր:

Մորդ համար շատ զգալի է քո բացակայությունը: Սերյոժան ծաղկում է և հիշում քեզ սիրով ու կարոտով»:

18 հունվարի, 1917 թ., Սարատով

«Սիրելի՛ Սերյոժկա:

Մի քանի օրից կլրանա քո երեք տարին: Շնորհավորու՞մ եմ, թանկագի՞ն տղաս, ջերմորեն համբուրում և առողջություն եմ մաղթում: Շնորհակալ եմ այն մեծ բավականության համար, որ պատճառեցիր մեզ քո գոյության այս երեք տարվա ընթացքում, և մաղթում եմ, որ ծլես-ծաղկես մայրիկիդ, քույրերիդ, եղբայրներիդ ու հայրիկիդ ուրախության ու երջանկության համար: Քեզ դուր եկա՞վ թմբուկը, թանկագի՛ն Սերյոժկա: Պինդ գրկում ու համբուրում եմ»:

7 փետրվարի, 1917 թ., Սարատով

«Սիրելի՛ երեխաներ, ինչպե՞ս եք անցկացնում ժամանակը, ինչպե՞ս են ընթանում ձեր պարապմունքները: Քո բացիկը, սիրելի՛ Սուրիկ, ստացա: Գնու՞մ եք արդյոք թատրոն: Դա անհրաժեշտ է, երեխանե՛ր: Բելինսկին իր հոդվածներից ինչ-որ մեկում հարցնում է. «Գնու՞մ եք արդյոք թատրոն: Օ՜, գնացե՛ք թատրոն, գնացե՛ք և, եթե կարող եք, մեռեք այնտե՛ղ»: Նա շուտ խանդավառվող մարդ էր: Ես, իհարկե, ոչ ոքի խորհուրդ չեմ տալիս թատրոնում մեռնել, բայց գնալ անհրաժեշտ է:

Այն ամենը, ինչ բեմադրվում է դասականներից, անպայման պետք է դիտել. Շեքսպիր, Շիլլեր, Իբսեն, Օստրովսկի, բոլոր օպերաները և այլն: Նոր պիեսները գնացեք տեսեք գիտակ մարդկանց խորհրդով:

Աշխատեք ազատ ժամանակ մարմնամարզությամբ զբաղվել, երևակայեցեք, ես օրը երկու անգամ 10—15 րոպե կատարում եմ և շատ գոհ եմ: Ժամանակ խնայել միշտ էլ կարելի է: Քեզ էլ անհրաժեշտ է այդ, սիրելի՛ Մանյա: Համբուրում եմ ձեզ բոլորիդ՝ Սուրենին, Մանյային, Լյովային և Սերյոժային»:

Ձեր ՀԱՅՐԻԿ

# ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԻՑ

12 հուլիսի, 1913 թ., Մետեխի բանտ

Իմ թանկագի՛ն աղջիկս:

Քիչ ժամանակ է մնացել, և շուտով ինձ կտանեն հեռու՜-հեռու և երկար, շատ երկար ժամանակով: Դու աշխարհագրությունից սովորել ես, որ Ռուսաստանում, Ուրալի լեռներից այն կողմը, տարածված է ընդարձակ մի երկիր՝ Սիբիրը: Այնտեղ շատ ձյուն է լինում, դաժան սառնամանիք, կան հսկայական գետեր, մթին անտառներ, հազարավոր վերստերով ձգվում են ճահիճները, այնտեղ շատ կան թանկագին մորթի ունեցող գազաններ, հյուսիսային գեղեցիկ շատ եղջերուներ կան, որոնց լծում են: Ես այնտեղ կսովորեմ չմուշկներ գործածել, դահուկներով շրջել և այնտեղից քեզ կուղարկեմ մի փոքրիկ գազանի մորթի՝ գլխարկի կամ ձեռնամուշտակի համար: Լա՞վ: Ինձ կտանեն հենց այդ Սիբիրը: Ամեն տեղ մարդիկ են ապրում, և Սիբիրում էլ ես կապրեմ ոչ ավելի վատ, քան այստեղ: Միայն թե տխուր կլինի առանց ձեզ, ի՛մ բալիկներ, առանց մամայի: Դուք կմեծանաք առանց ինձ, առանց ինձ հասակ կառնեք: Այ, սա՛ նույնպես ցավալի է: Ես շատ էի ուզում, ի՛մ բալիկներ, պարապել ձեզ հետ, որպեսզի դուք լավ մարդիկ դառնաք՝ հասարակության համար օգտակար, որպեսզի ձեր սրտերը լինեն բարի և կարեկից, որպեսզի դուք սիրեք ուսումն ու աշխատանքը: Ոչինչ: Մաման ձեզ կհետևի, իսկ դուք ինձ հաճախակի կգրեք, որպեսզի ես տեսնեմ, թե ինչպես եք օրեցօր խելոքանում: Դուք, իհարկե, լավ բալիկներ կլինեք և չեք վշտացնի ինձ և մամային: Երբ մեծանաք, ես էլ երևի արդեն ազատ կլինեմ, այն ժամանակ կգնաք համալսարաններ սովորելու, ես էլ ձեզ հետ կգնամ և նույնպես կսովորեմ: Թանկագին Մանյուրկա, լա՛վ սովորիր, եռանդով: Ով որ սկզբում սովորում է ջանասիրությամբ, նրա համար հետագայում ամեն ինչ հեշտ է լինում: Քո օրինակը կազդի մյուս երեխաների՝ Լիլկայի, Ստյոպկայի և Նյուր-

*)Նամակը հասցեագրված է Սպանդարյանի ավագ դստերը՝ Մանյային:

կայի վրա: Իմացի՛ր, որ ո՛չ ես, ո՛չ էլ մամաՆ բացի կրթությունից, քեզ և մնացածներին ոչինչ չենք կարող տալ և դուք բոլորդ էլ ինքներդ պետք է վաստակեք ձեր «մի կտոր հացը»:

Քո ՀԱՅՐԻԿ»

10 դեկտեմբերի, 1914 թ.,
Մոնաստիրսկոյե գյուղ

«Երևի դու՛ք, զավակնե՛րս, լսել եք, որ ֆրանսիական Ռեյմս քաղաքի ռմբակոծության ժամանակ գերմանական կրակոցներից վնասվել է հին եկեղեցին, կաթոլիկական տաճարը. այս առթիվ շատ են գրել և աղմկել, այդ տաճարի ավերումն անվանել են վայրենություն, բարբարոսություն և այլն, և այլն: Հապա մըտածե՛ք, զավակնե՛րս, թե որն է ավելի սարսափելի, տաճարի ավերու՞մը, թե՞ հազարավոր ու միլիոնավոր մարդկանց կոտորածը: Մինչդեռ հիմա, ամեն օր, ամեն ժամ, ամեն րոպե հազարավոր մարդիկ սպանում են իրար, միլիոնավոր երեխաներ որբ են մնում, մայրերը զրկվում են իրենց երեխաներից, մարդիկ քայքայվում են, սովի մատնվում: Պատերազմն ինքնին զարհուրելի, վայրենի, բարբարոսական բան է, մանավանդ այնպիսին, ինչպիսին է այս համաշխարհային պատերազմը: Մենք այժմ բոլոր տեսակետներով տխուր մի ժամանակ ենք ապրում, և դուք, զավակներս, մի՛ չարանաք, ոչ ոքի մի՛ ատեք: Կգա ժամանակ, մշուշը կցրվի, վրա կհասնի արցունքների ծովի, արյան օվկիանոսների, միլիոնավոր խորտակված կյանքերի հատուցման ժամը: Թանկագին Մանյու՛րա, այն գրքերը, որ դու կարդում ես, ոչինչ, վատ չեն, բայց ավելի լավ կըլինեն շատ կարդալ բնագիտական գրքեր: Այ, ես քիչ բան գիտեմ բնության մասին և հաճախ տուժում եմ դրանից: Ժամանակ ունես, կարդա՛, սովորի՛ր: Հիմա քո խնկական ոսկի ժամանակն է: Ուրախ եմ քո առաջադիմության համար, Մանյու՛րկա: Եվ է՛լ ավելի ուրախ կլինեի, եթե քո զարգացման, քեզ հետաքրքրող և հուզող հարցերի մասին դատեի ոչ թե թվանշաններից, այլ քո նամակների բովանդակությունից...

Ձեր ՀԱՅՐԻԿ

9-ը մարտի, 1915 թ.,
Մոնաստիրսկոյե գյուղ

«Իմ թանկագի՛ն զավակներ:
Այժմ ես եռանդով զբաղվում եմ գերմաներեն լեզվով, իսկ մոտ օրերս կսկսեմ նաև ֆրանսերենը: Մի բան վատ է. ես կանոնավոր բառարան չունեմ ո՛չ մեկ և ո՛չ էլ մյուս լեզվի, չունեմ նաև ընթերցանության գիրք: Գուցե դուք ունեք, և եթե կարող եք՝ ուղարկե՛ք ինձ: Շնորհակալ կլինեմ և կվերադարձնեմ, երբ այլևս նրանց կարիքը չեմ ունենա: Եթե լեզուներ սովորելու գործերը հաջող գնան, կձեռնարկեմ նաև անգլերենին, թեև այս լեզվից էլ ես ոչ մի ձեռնարկ չունեմ: Իսկ ինչպե՞ս է ձեր լեզուները սովորելու գործը: Չէ՞ որ մաման լավ գիտե ֆրանսերեն, իսկ դուք այժմ այնպիսի հասակ ունեք, որ հեշտությամբ կարող եք յուրացնել ֆրանսերենը: Մամային ստիպեցեք, որ ֆրանսերեն խոսի ձեզ հետ: Ես շատ կուզեի, որ դուք սովորեիք հայերեն կարդալ, խոսել և գրել: Բայց այս իմ ցանկությունն րստ երևույթին անիրագործելի է: Թեև Թիֆլիսում այս բանը հեշտությամբ կարելի էր գլուխ բերել: Լեզուներ իմանալը չափազանց կարևոր ու անհրաժեշտ է բոլոր տեսակետներից: Մաման ձեզ կասի, թե եվրոպական լեզուների տիրապետելն ինչ նշանակություն ունի կըրթություն, գիտելիքներ ձեռք բերելու, համամարդկային կուլտուրան յուրացնելու համար: Առանձնապես ամռանը կարելի է ամբողջապես նվիրվել լեզուներին: Սկզբում կլինի դժվար, ձանձրալի, արտասովոր, իսկ հետո հեշտ կլինի և հաճելի: Մի խոսքով, ես ձեզանից յուրօ աշխատանքներ եմ սպասում այս ուղղությամբ: Ինձ համար չափազանց ծանր ու անախորժ կըլինի, եթե դուք դառնաք «անլեզու մարդիկ»: Դրանից ես շատ բան եմ կորցրել և այժմ էլ կորցնում եմ:
Եվ այսպես, լրջորեն դեպի գո՛րծ:

Ձեր ՀԱՅՐԻԿ

17 փետրվարի, 1916 թ.,
Մոնաստիրսկոյե գյուղ

«Իմ թանկագիննե՛րս. ստացա ձեր նամակը և գեթ մի փոքր ուրախացա իմ այս

տաղտկալի կյանքում: Մի բան միայն ինձ համար անախորժ էր. դա Մարուսկայի դպրոցական գործերն են: Նա ոչ միայն սկսել է ավելի վատ սովորել, այլև նույնիսկ նրա նամակներն էլ հիմա առաջվա նամակների նման չեն. գրում է կեղտոտ, թանաք կաթեցնելով գրածի վրա, սխալներով: Ի՞նչ է պատահել, աղջի՛կս: Դու նույնիսկ այնպիսի առարկաներից, ինչպիսիք են պատմությունն ու աշխարհագրությունը, հազիվ կարողանում ես «3» ստանալ: Հապա ի՞նչն է քեզ հետաքրքրում, ի՞նչ ես անում ամբողջ օրերով: Դու մի անգամ գրել էիր ինձ, որ քեզ շատ է հետաքրքրում պատմությունը: Բանից դուրս է գալիս, որ քո այդ հետաքրքրությունը 3-ից դենը չի գնում: Քո այդ անշեղորեն ընկնող հաջողություններն ինձ շատ են անհանգստացնում և մտահոգություն պատճառում: Ահա նստած եմ լինում կամ պառկած, կարծես թե ոչ մի բանի մասին չեմ մտածում, մեկ էլ տեսար՝ սիրտս ցավեց: Ի՞նչ պատահեց: Պատճառն ի՞նչ է: Որ մի քիչ սկսում եմ խորանալ, պարզվում է, որ ամբողջ ցավը գալիս է քո նամակից և քո թվանշաններից: Իհարկե, ես այն կարծիքի չեմ, թե թվանշաններն իսկապես ճիշտ կերպով են որոշում և չափում աշակերտի գիտելիքների պաշարը, բայց և այնպես, գեթ հարաբերական չափով նրանք ինչ-որ գաղափար տալիս են աշակերտի գիտեցածի մասին: Իսկ քո նամակն ըստ ամենայնի հաստատում է նույնիսկ «2»-ը ռուսաց լեզվից: «Կարմիր ծովահենները» կարդալով շատ էլ առաջ չես գնա, սիրելի՛ս: Թո՛ղ ապա այդ բաներն ու զբաղվիր որևէ օգտակար գործով:

Քո հասակում ես կարդում էի շատ ավելի լուրջ գրքեր, մինչդեռ ինձ վրա այնպիսի ներազդող չկար, ինչպիսին քեզ համար քո սիրելի և թանկագին մայրիկն է: Իմ մտավոր զարգացմամբ գրեթե ոչ ոք չէր հետաքրքրվում, և ես դեռ մինչև այսօր էլ տառապում եմ դրանից: Եվ այնուամենայնիվ ես բնազդաբար ձգտում էի դեպի լուրջ գրքերը և ոչ թե դեպի ինչ-որ «ծովային և այլ տեսակի ավազակների»: Ուզում եմ հուսալ, որ այսուհետև իմ անուշիկ Մերին վճռական մի շրջադարձ կկատարի հաջողություններ ձեռք բերելու պարապմունքներում:

Ձեր ՀԱՅՐԻԿ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Մեր դռան առուն

— Որտեղի՞ց ես գալիս, առու՛...
— Ես՝ Աբուլի լճից հեռու:
— Դու՝ Աբուլի լճից հեռու
Ի՞նչ ես հետդ առած բերում...
— Բերում եմ իմ ջրերում ջինջ
Վայրի բադի ճիչ ու կռինչ,
Բերում եմ ես քաղցրակարկաչ
Կռունկների արծաթե կանչ,
Բերում եմ ես հստա՜կ-հստա՜կ
Առվակների երգ ու նվագ,
Ջկնկուլի ճիչը վայրի՝
Խառնած ամենն այդ լիուլի
Ուրց ու դաղձի անուշ բույրին...
— Էլ ու՞ր, առու՛,
Ե՛կ ինձ լսիր,
Ի՛մ մեջ հոսիր...

ՆԿ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



Հայրենական պատերազմում զոհվածների հուշարձանի մոտից Վերին Կարմիրաղբյուր գյուղը առավել քան գեղեցիկ տեսք ունի: Ժամանակակից երկհարկանի տներ են՝ իրենց ամրությամբ ու հավաք տեսքով՝ աչք շոյող: Փոքրիկ տնամերձ հողակտորները խնամքով մշակված են: Հանդերում նույնպես, որտեղ էլ լինեք, ժամանակին համընթաց քայլելու ցանկությունը նկատելի է: Սակայն վերինկարմիրաղբյուրցիները աչքի են ընկնում նաև նրանով, որ չեն մոռանում անցյալը, հարուստ են հիշողությամբ: Այդ է վկայում հայրենագիտական թանգարանը, որ ընտեղծվել է 1968 թվականին:

— Նպատակը շատ որոշակի էր,— պատմում է թանգարանի հիմնադիրը՝ պատմության ուսուցիչ Սերգեյ Միքթարյանը,— գյուղի անցյալ կյանքի հիշողությունները անհետացումից փրկել և պահել:

Թանգարանում բոլոր ցուցանմուշները խմբավորված են: Ազգագրական բաժնում ցուցադրված են գունագեղ գորգեր ու նախշած կարպետներ, մանրահյուս գլխաշորեր...

Դժվար չի՞ եղել, արդյոք, տերերի համար այս իրերից բաժանվելը:

— Նրանց բացատրվել է, և նրանք համոզվել են, որ այս թանկ մասունքները այստեղ կպահպանվեն ավելի լավ, միաժամանակ կդառնան բոլորի սեփականությունը,— ասում է Ս. Միքթարյանը:

Մեկ այլ անկյունում երաժշտական գործիքներն են՝ հռչակավոր քյամանչան, դուդուկը, դհոլը, սրինգը:

Դրանց կողքին փայտե իրերն են՝ տաշտակներ, շերեփներ, ճախարակ, նախշազարդ օրորոց:

Հնագիտական շատ արժեքավոր ցուցանմուշներ կան՝ կավե կճուճներ, սափորներ, քարե կացին, պղնձե ափսեներ, բրոնզե իրեր, մորթի մշակելու գործիք, ինչպես նաև հնագույն զենքեր:

— Նայելով դաշույններին, սրերին,— ասում է յոթերորդ դասարանցի Տիգրանը,— ասես զենքերի շառաչ ես լսում, պատմության դասագրքում գրվածը կենդանանում է:

Առանձին բաժին են կազմում հնագույն դրամները: Այստեղ դրամներ կան նույնիսկ... Տիգրան Մեծի պատկերով: Կան ցարական Ռուսաստանի արծաթե դրամներ, թղթադրամներ:



# Հիշողությ



Այստեղ ցուցադրված են նաև պատմությանը, գրականությանը, այլ մասնագիտություններին վերաբերող գրքերի հազվադեպ հրատարակություններ՝ արդեխունացած կազմերով ու էջերով, թերթե



## …ւնը փանձ է



Լուսանկարը՝ ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

չես համարձակվում:

Թանգարանում պրոֆեսիոնալ հեղափոխական Հովսեփ Պողոսյանին հատկացված է առանձին անկյուն: Լուսանկարներն ու փաստաթղթերը պատմում են նրա մանկության, երիտասարդության, ողջ հերոսական կյանքի մասին:

Մայիսյան ապստամբության զոհերին նվիրված է մի ստենդ, կողքին Հայրենական պատերազմում զոհված 165 վերինկարմիրաղբյուրցիների լուսանկարներն են ու համառոտ կենսագրությունները:

Թանգարանն ունի մոտ չորս հազար ցուցանմուշ՝ հետևողական, ջանադիր աշխատանքի, գործին նվիրվելու կարողության շնորհիվ:

Նորաշենի դպրոցի հայրենագիտական թանգարանն էլ իր ուրույն դիմագիծն ունի: Այստեղ ևս կան դրամների ու զենքերի հավաքածուներ, տարբեր չափսերի կարասներ ու կճուճներ, կենցաղային այլ իրեր: Իսկ հեթանոսական շրջանի զարդերը թանգարանի զարդերն են:

— Թանգարանում ենք անցկացնում պատմության մի շարք դասեր,— տեղեկացնում է դպրոցի պատմության ուսուցիչը՝ ընկ. Վիլհելմ Ավագյանը:

Թանգարանում հավաքված են Ծամշադինում աճող ամենատարբեր ծառերի ու թփերի նմուշներ. մի ճյուղ, մի տերև, ծառաբնի մի կտոր: Իսկ ներքևում բացատրություններ են փակցված: Այդ ամենը օգնում են աշակերտներին ճանաչել հայրենի բնաշխարհը, նրանց նկատմամբ սեր ու հետաքրքրություն են արթնացնում:

Թանգարանի սրահում են հանգրվանել արդեն հուշ դարձած սայլը, կալսիչը, փուքսը, կլայեկելու սարքը: Փուքսը մի փոքր «ժամանակակից» է դարձել. ձգում ես ճոպանը և հնոցում վառվում է... էլեկտրական լույս:

Հայրենական մեծ պատերազմին մասնակցած համագյուղացիների լուսանկարներն ու կենսագրական տվյալներն առանձին անկյունում են հավաքված: Նրանց անմնացորդ նվիրումը հայրենիքին ամենօրյա դաս է աշակերտների համար:

Դպրոցականները պատրաստել են գյուղի տարբեր ժամանակների մասին պատմող ալբոմներ: Տատիկներից ու պապիկներից խնդրել, հավաքել են զանազան լուսանկարներ, գրի առել հուշերից պատառիկներ:

— Այստեղ մեր դասերը ավելի հետաքրքիր են անցնում, և ստանում են տոնական բնույթ,— ասում են աշակերտները:

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ






Փոքրիկ մի աղջիկ էր նա՝ 10—12 տարեկան, որ ամեն առավոտ, արշալույսից էլ առաջ հայտնվում էր ծովափին։ Ոչ ոք չգիտեր, թե ով է նա և որտեղ է ապրում։

Այնքան վտիտ էր և այնքան փխրուն, որ ինձ թվում էր արևն ու ծովն էին արարել նրան՝ մեկն իր շողերից, մյուսը՝ կապույտ հայելուց։

Դեղին մազեր ուներ և ծովի պես կապույտ ու խորունկ աչքեր, որոնց մեջ մերթ արևն էր փայլում ու մերթ էլ՝ ծովի անսահման հեռուն։ Ասես հրաշքով կիսվել էր ծովը, խտացել նրա բիբերում ու դարձել աչքեր։ Ծովի պես կապույտ շրջազգեստ ուներ՝ թափանցիկ ու նուրբ, որ մշուշի պես ծածկում էր նրա արևահար մարմինը։

Չգիտեմ, թե երբ էր գալիս ծով, բայց արշալույսից առաջ միշտ այնտեղ էր, և ես ամեն առավոտ տեսնում էի նրան՝ միևնույն շրջազգեստով։ Սկզբում նա ինձ թվաց մի դժբախտ որբուկ, որ իր ապրուստն էր փնտրում ծովափին։ Իսկ նրա համար աշխարհն ասես գոյություն չուներ. ինքն էր ու ծովը։ Ծրջում էր դանդաղ, մտախոհ ու լուռ, երբեմն հակվում ծովաքարերին, ավազների մեջ ինչ-որ բան փնտրում։ Իսկ երբ քաղաքն արթնանում էր քնից և ծովը լցվում մերկ մարմիններով, նա հեռանում էր նույնքան աննկատ, որքան աննկատ հայտնվել էր։

Նրա աչքերը շատ էին թախծոտ, դիմագծերը՝ նուրբ ու ազնվատիպ։ Բայց թե ո՞վ էր նա, ի՞նչ էր որոնում, ինչու՞ էր մենակ ծովափին։ Այս հարցերը տանջում էին ինձ։ Փոքրիկ այդ աղջնակն ինձ համար դարձել էր առեղծված։

Մի առավոտ սովորականից շուտ էի զարթնել, դուրս եկա տնից։ Քայլերս ինձ տարան ծովափ։ Ճիշտն ասած, այդ ժամին չէի ըսպասում հանդիպել նրան։ Եվ, իրոք, նա ծովափին չէր։ Օրը տխուր էր, և ծովը փոթորիկ էր խոստանում։ Նրա խորքերում, ինչ-որ տեղ ծնված ալիքները կուտակվելով ափ էին նետվում ու փշրվում ավազների վրա։

Նման եղանակին վտանգավոր էր լողալը։ Իսկ ծովը գնալով ավելի էր հուզվում. հսկայական կաթսայի պես եռում էր, և ես լսում էի նրա ահեղ շնչառությունը։

Խաղաղ օրերին պարզորոշ նկատելի էին լողալու համար սահմանանշանի կարմիր գնդերը, որոնք, խարիսխներին կապված՝ դանդաղորեն տարուբերվում էին ալիքների մեջ, իսկ այդ օրը դրանք մի ակնթարթ միայն հայտնվում էին ջրի երեսին և իսկույն կորչում տեսադաշտից, ջրասույզ լինում։

Ես ուշադիր նայում էի հեռուն, փորձում ալիքների մեջ որսալ կարմիր այդ գնդերը, երբ ծովի հեռվում, նշաններից այն կողմ, բարձրացող ալիքների վրա մի պահ երևաց ու անհետացավ ինչ-որ բան. մա՞րդ էր խեղդվում։ Ես ակամա վեր ցատկեցի և հազիվ իմ մեջ խեղդեցի օգնության կանչելու տագնապահար ճիչը։

Ծովափը լուռ էր։ Փրկարար նավակն էլ կապված էր խարսխին։

Ամբողջովին ուշադրություն դարձած՝ փորձեցի նորից որսալ այդ կետը։ Սակայն՝ ապարդյուն։ Մի պահ ինձ թվաց, թե դա տեսիլք էր։ Հավիտենություն տևեց, մինչև որ ալիքների մեջ հայտնվեց դեղնավուն մի գլուխ։ Այդ նա էր՝ առեղծվածային փոքրիկը, որ մաքառում էր ալիքների դեմ։

Մի պահ կախարդված նայում էի նրան։ Ամբողջ մարմնով դողում էի։ Ինձանից անկախ մղվեցի դեպի ծովը, բայց ոտքերիս դիպչող սառն ալիքները սթափեցրին ինձ։ Սարսափած ետ քաշվեցի։ Սակայն զորավոր մի ուժ ինձ դարձյալ քաշում էր դեպի ծով։ Թեր-

ևս այդ ուժն էր կամ փոքրիկ լողորդին մոտ լինելու զգացումը, որ ինձ տարավ դեպի բետոնակուռ խարսխակայանը, որ հարյուր մետրի չափ խորանում էր ծովի մեջ:

Այժմ ես ավելի մոտ էի լողորդին և խարսխակայանի բարձրությունից ավելի լավ էի տեսնում նրան: Նա մաքառում էր ալիքների դեմ: Բարալիկ ձեռքերով ճեղքում էր ալիքների կուրծքը և ինձ համար անսովոր թափով առաջ մղում փետուրի նման թեթև մարմինը:

Ես սարսափով էի նայում նրան և բարձրացող ալիքներին, որոնք իջնում էին նրա փխրուն ուսերին, մի պահ կորցնում նրան իրենց մեջ, իսկ հաջորդ պահին ասես նահանջում նրանից կամ նրան քաշում իրենց գիրկը:

Իսկ նա համառորեն առաջ էր մղվում: Մի պահ ինձ թվաց, թե հոգնել է և ուժասպառ եղած հանձնվել ծովին: Սիրտս կծկվեց, և օգնության կանչը կրկին խեղդվեց կոկորդիս մեջ: Բայց ոչ, նա լողում էր, և ես արդեն տեսնում էի նրա դեմքը: Նա մոտենում էր ափին: Քիչ առաջ ինձ համակած վախը փոխվել էր հիացմունքի, և ես հմայված նայում էի նրան:

Որքան նա մոտենում էր ափին, այնքան ավելի էին մեծանում ալիքները: Եվ այդ պահին էր, որ աննկատելիորեն բարձրացող մի ալիք դավադիր ուժով փլվեց նրա ուսերին: Ես տեսա, թե ինչպես փոքրիկ լողորդը նույն ակնթարթում սուզվեց, կորավ ջրերի խորքում: Մի քանի վայրկյան, որ ինձ ժամեր թվացին, ես փնտրում էի նրան այնտեղ, ուր վերջին անգամ տեսել էի: Իսկ նրան զարկող ալիքը, հետզհետե ահագնանալով, մոտենում էր ափին: Եվ հանկարծ, հենց նրա թիկունքում, ասես հզոր այդ ալիքից բռնած, հայտնվեց նա: Ափն արդեն մոտ էր, և ես, ուրախության կանչերով, նրան զուգահեռ վազում էի խարսխակայանի բետոնի վրայով: Երբ նա հայտնըվեց ափին, ես արդեն նրա մոտ էի: Սարսափելի հոգնած էր և իսկույն փլվեց ավազների վրա: Ես նստեցի նրա մոտ և, հիացմունքից կարկամած, չէի կարողանում խոսել: Ուրախության արցունքներից թրջվել էին իմ աչքերը, իսկ նա պառկել էր մեջքի վրա և փորձում էր հևալալական լարվածությունից բեռնաթափել իր մարմինը: Անհամաչափ շընչառությունից ելևէջում էր նրա փոքրիկ կուրծքը, մկանները թրթռում էին...

Նայում էի նրան և զարմանում, թե նա ինչպես կարողացավ հաղթահարել ծովի տարերքը, որ թվում էր անզսպելի:

— Չէի՞ք վախենում,— հարցրի ակամա: Ավելի շուտ դա ինձ համակած զգացումն էր հարցի վերածվել:

Նա դանդաղորեն նստեց և հայացքը ծովի հեռուներին՝ ասաց.

— Սովոր եմ, ծովից չեմ վախենում:

— Բայց, սարսափելի չէ՞ անսահման ծովի մեջ մենակ և այն էլ այս ժամին: Ինչու՞ էիք այդքան հեռու գնացել:

— Գնացել էի մայրիկիս մոտ,— հանգիստ պատասխանեց նա:

— Մայրիկի՞դ,— զարմացա ես.— նա ի՞նչ գործ ունի այնտեղ, ծովի մե՞ջ է ապրում, ի՞նչ է...

— Այո՛, նա այնտեղ է արդեն երեք տարի, և ես ամեն օր այցի եմ գնում նրան...

Զարմանքն ու հետաքրքրությունը պաշարել էին ինձ: Ոչինչ չէի հասկանում: Իսկ նա չէր շտապում ինձ պատասխանել:

Նա երկար լռեց: Ես չէի համարձակվում խախտել լռությունը, թեև մտքիս մեջ բազում հարցեր էին ծնվում ու մեռնում...

Թերևս իմ հարցական հայացքն էր, որ նրան ստիպեց խոսել:

— Երեք տարի առաջ էր: Մայրիկիս հետ եկել էինք ծով: Նա այստեղ է ծնվել ու ապրել: Մեր տունն հեռու չէ: Ես հիմա տատիկիս հետ եմ ապրում:

Խոսում էր արագ: Ընդհատվող ձայնով: Նախադասությունները կարճ էին, թվում էր՝ անկապ:

— Նա շատ անվախ էր: Նրա պես լողորդ ես չեմ տեսել: Գնում էր հեռու, ծովի խորքերը: Ինձ էլ տանում էր իր հետ: Մի անգամ, երբ սովորականի պես հեռացել էինք ափից, ծովը խոժոռվեց: Երկինքն ասես միանգամից մըթնեց: Փոթորիկը մոտենում էր: Մեր թիկունքում զգում էինք նրա շունչը: Արդեն վերադառնում էինք: Ափը հեռու չէր և սարսափելի ոչինչ չկար: Սկզբում մենք լողում էինք կողք-կողքի, բայց հետո, վախենալով, որ ալիքները ինձ կարող են հեռացնել իրենից, մայրս մի ձեռքով գրկեց ինձ, այսպես՝ թևերիս տակից: Իսկ ծովն արդեն ոռնում էր ահեղ: Արդեն բոլորովին մոտ էինք ափին, երբ հանկարծ տեսա, որ նա սուզվում է. ուժեղ

լարումից մարմինը ընդարմացել էր, ոտքերը փայտացել և չէին ենթարկվում իրեն: Նա մի պահ շուռ եկավ մեջքի վրա և, մի ձեռքով դարձյալ ինձ բռնած, սկսեց թիկնալող տալ: Իսկ ալիքները հաջորդում էին միմյանց՝ մեկը մյուսից ուժեղ: Հանկարծ մի ալիք իր երախն առավ մեզ: Ես զգացի, թե ինչպես մայրըս ինձ վեր շպրտեց և ես հայտնվեցի ալիքի վրա, որն էլ ինձ ափ նետեց: Երբ շուռ եկա, նահանջող ալիքի մեջ մի պահ տեսա մորս կանաչ լողազգեստը... Այդպես էլ մորս չգտան... և ես ամեն օր այցի եմ գնում նրան...

Աղջիկը լռեց: Նրա շուրթերը դողում էին: Զգում էի, որ զսպում է արցունքները, որոնք ծովացել էին կապույտ աչքերում:

Երբ հանգստացավ և ես էլ հաղթահարեցի հուզմունքս, գրկեցի նրա նիհար ուսերը և խնդրեցի գնալ տուն: Նա ծանրորեն բարձրացավ տեղից, բայց հրաժարվեց տուն վերադառնալ:

— Ես դեռ գործ ունեմ,— ասաց մտախոհ,—ծովաքար պիտի հավաքեմ:

— Ինչի՞դ են պետք ծովաքարերը:

— Մայրիկիս եմ նկարում:

— Ծովաքարերո՞վ...

— Այո՛, խճանկար է...

— Ինձ կարելի՞ է տեսնել այդ նկարը...

— Դեռ չեմ ավարտել,— ասաց ու լռեց, բայց քիչ հետո ավելացրեց.— Ուզու՞մ ես՝ գընանք:

Երբ արդեն նրա գրպանները լի էին ծովաքարերով ու խեցիներով, մի պահ կանգ առավ և ուղիղ աչքերիս մեջ նայելով, ասաց.

— Այսօրվա մասին տատիկիս չասես, թե չէ նա երբեք ինձ ծով չի թողնի:

Խոստացա լռել, թեև վախենում էի նրա համար և ներքին մի ձայն համառորեն ինձ ըստիպում էր չհամաձայնել այդ պայմանին:

Իրոք, նա ծովից հեռու չէր ապրում. ծովեզրով ձգվող երկաթգծերն հատելով մենք անցանք կենտրոնական փողոցը և կանգ առանք մի փոքրիկ կանաչ դարպասի առաջ, որից այն կողմ, թզենիների միջից երևում էր երկհարկանի սպիտակ տունը՝ նույնպես կանաչ գույնի ներկված փայտե ձեղնահարկով:

Երբ բակ մտանք, նա մի պահ փակեց ճանապարհս և հրամանի պես նորից պահանջեց այսօրվա մասին չասել տատիկին և չըսպասելով պատասխանի, բաց արեց դուռը: Ընդարձակ միջանցքի վրա ևս երեք դռներ էին բացվում: Նա դանդաղ մոտեցավ վերջին, երկփեղկանի դռանը և երկու ձեռքերով կըռընկի վրա լայն բաց արեց ու քաշվեց մի կողմ: Ես մոտեցա, բայց նույն պահին էլ կարկամած կանգ առա շեմին. ուղիղ մեր դիմաց հառաչում էր մոլեգնած ծովը: Ինձ մի պահ թվաց, թե դուռը բացվում էր հենց ծովի վրա: Ես զգացի նրա սառը շունչը: Մարմինս սարսռաց մի պահ: Սակայն, տիրապետելով ինձ, անցա շեմը, բայց չհամարձակվեցի այլևս առաջ գնալ. ալեկոծ ծովն ինձ գամեց տեղում: Ես զգում էի նրա շարժումը: Փրփրաբաշ ալիքները գալիս էին ուղիղ դեպի ինձ: Մթագնած երկնքի ֆոնի վրա առավել ճերմակ էին երևում ալիքների փրփուր բաշերը, իսկ նրանց մեջ, ասես ջրերի խորքից, բարձրանում էր մի հավերժահարս, որն իր գեղեցկությամբ մեղմում էր ծովի ահեղ պատկերը: Նրա ցորենագույն մազերը ծածանվում էին ալիքների մեջ, իսկ վեր պարզած ձեռքով ասես սանձում էր բնության մոլեգին տարերքը: Նայում էր նա ինձ: Նրա հայացքում տագնապ կար, սեղմված շուրթերին՝ զարմանալի կամք: Հույսի մի շիթ կար նրա աչքերում, որոնք լուսարձակների պես ուղղված էին հեռուն: Դա թերևս այն պահն էր, երբ նա վերջին անգամ տեսնում էր ափը և այնտեղ հասած փոքրիկ աղջկան...

Կանգնել ու հմայված նայում էի այդ կընոջը, որի աչքերի լուսարձակներն ինձ առել էին իրենց լույսերի մեջ և բաց չէին թողնում, իսկ Լենան (այդպես էր իմ նոր ծանոթ աղջկա անունը) փոքրիկ սեղանին էր դատարկում գըրպանների պարունակությունը՝ գույնզգույն ծովաքարեր, խեցիներ ու ավազահատիկներ:

Զգալով, որ ես դեռ նկարի ազդեցության տակ եմ, նա կանգնեց իմ կողքին և փորձեց ինձ հանել այդ վիճակից.

— Ես դեռ չեմ ավարտել,— ասաց,— տեսնու՞մ ես, երկնքի մի մասը չկա...

— Բայց այսպիսի կինը չի կարող զոհվել, նա շատ ուժեղ է և աչքերի մեջ հավատ կա, հաղթելու կամք...

— Իսկ նա իրոք հաղթել է, չէ՞ որ նա ինձ ափ հասցրեց և տեսավ իմ փրկությունը, մընացածն արդեն սարսափելի չէր նրա համար...

**ՆԱԻՐԱ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ**

**Երևանի № 192 միջնակարգ դպրոցի IX դասարան**











ՎԱՀԱԳՆ ԶԱՔԱՐՅԱՆ Ե. Չարենցի անվ. № 67 դպրոց, 4-րդ «Բ» դաս.



# ՇԱՌԼ ԱԶՆԱՎՈՒՐ



**Տ. ԲՈՒՏԿՈՎՍԿԱՅԱ**

Ձայնային բոլոր պատվավոր ու պատվաբեր տիտղոսներին, դժվար է Ազնավուր.ին ճակատագրի ընտրյալ համարել: Դեպի մեծ բեմահարթակ տանող նրա ճանապարհը ավելի շատ փշերով, քան թե վարդերով էր ծածկված:

Վաղինակ Ազնավուրյանը (այսպես է երգչի իսկական անունը) ծնվել է Փարիզում, հայկական ընտանիքում: Նրա ծնողները գաղթականներ էին, որոնք կարողացել էին փրկվել օսմանյան դահիճներից և բնակություն հաստատել Ֆրանսիայում: Ազնավուրյանների ընտանիքը շատ երաժշտասեր էր, հայրը պրոֆեսիոնալ երգիչ էր, հրաշալի երգում էր հայկական և ռուսական աճթիվ անհամար երգեր: Մայրը բավական լավ դաշնամուր էր նվագում: Տանը հաճախ էին հավաքվում հարազատները, հայ բարեկամները, և սկսվում էր իսկական երաժշտական երեկույթ, որտեղ երեխաները ձայնակցելով մեծերին, հայրենիքի լեզուն ու երաժշտությունն էին ընկալում: «Եթե հայրս կոշկակար լիներ, երևի, ես էլ կոշիկ կկարեի,— իր հարցազրույցներից մեկի ժամանակ ասել է Ազնավուրը: — Հայերի երեխաները, որպես կանոն, ժառանգում են ծնողների մասնագիտությունը»:

Պատանի Ազնավուրի կուռքը ֆրանսիական էստրադայի նահապետ Մորիս Շեվալյեն էր: Տղան անգիր գիտեր նշանավոր արտիստի գուցե թե ողջ երգացանկը, ջանադիր ընդօրինակում էր նրան, և երգի մանկական մրցույթում տասնհինգամյա Շառլը դարձավ դափնեկիր:

Ազնավուրը վաղ է սկսել բանաստեղծություններ ու երաժշտություն հորինել: Որպեսզի ապրուստի փող վաստակեր, նա սեանսներից առաջ երգում էր կինոթատրոններում ու փոքրիկ կաֆեշանտաններում: Սակայն պատանի երգիչը չէր գրավում հասարակությանը: Անկանոն ծակող սուլոցներ ու կանչեր էր ստանում որպես պարգև: Ունկնդիրներին գրգռում էր իր երգերը առաջին դեմքով կատարող անշան տեսքով տղան, որն իրեն իր երգերի հերոս էր ներկայացնում և իր զգացմունքները անքող ցուցադրում: Անտրպրենյորները շտապում էին ազատագրվել սկսնակ երգչից: Ծածրահասակ, վտիտ տղան հեռու էր մյուզիկ հոլլի աստղի կերպարից: Ազնավուրը փորձեց ելույթ ունենալ իր ընկերոջ՝ Պոլ Ռոշի հետ, որը նրանց կատարած մի քանի եր-

գերի հեղինակն էր, սակայն այս զույգին էլ, ավա՛ղ, հաջողությունը չուղեկցեց:

1946 թվին, մի համերգի ժամանակ, որտեղ ելույթ ունեցան Շառլն ու Պոլը, ներկա էր Էդիտ Պիաֆը: Մեծ երգչուհին (իսկ Պիաֆն այն ժամանակ արդեն իր փառքի գագաթնակետին էր) այս ձախողակներին հրավիրեց մասնակցելու իր ծրագրին: Պիաֆն իսկույն երգող այս զույգից առանձնացրեց Ազնավուրին, նրա մեջ կարողացավ տեսնել այն, ինչը դեռ երկար տարիներ հետո էլ չէր տեսնում ոչ ոք: Մինչև 1954 թիվը Ազնավուրին հետապնդում էր անհաջողությունը: Ազնավուրի երգերը ֆրանսիական շատ երգիչներ էին կատարում, հասարակությունը գիտեր և բարեհաճությամբ էր ընդունում նրա «Անձրևը» Էդիտ Պիաֆի կատարմամբ, «Ջմեռ պապին», «Բուեր կան դիտակալ աշտարակներին» և այլ երգեր, բայց Ազնավուրին, որպես սեփական երգերի մեկնաբան, չէին ուզում ճանաչել: Էդիտ Պիաֆի հետ Միացյալ Նահանգներ կատարած ուղևորությունը նույնպես սպասած հույսերը չարդարացրեց: Մի օր էլ ձեռներեց մի իմպրեսարիո, Ազնավուրի «արևելյան» ծագումը նկատի առնելով, առաջարկեց նրան գնալ Մարոկկո: Այնտեղ երգչի հաջողությունը գերազանցեց բոլոր սպասելիքները: Եվ հրաշք կատարվեց: Կարծես անթել հեռախոսով ալաձագանքը Փարիզ հասավ: Վերադարձից հետո տեղի ունեցած հենց առաջին համերգներից փարիզեցիները «ուռաներով» ընդունեցին Ազնավուրի ելույթները: Հասարակությունը, որին առաջ գրգռում էր նրա խռպոտ ձայնը, անսպասելի կերպով գնահատեց նրան, նրա յուրաքանչյուր երգի թատերականացված մեկնաբանությունը, հուզականությունը, զգացմունքների անքողությունը:

Հիշելով Ազնավուրի հսկայական հաջողությամբ անցած առաջին ելույթը «Օլիմպիայում», ֆրանսիական երաժշտական քննադատ Գի Էրիսմանը գրում է. «Ազնավուրը շատ բանով է հիշեցնում Էդիտ Պիաֆի արտիստական կերպարը... Ազնավուրն ունի խուքի, կերպարի, մեղեդու այն շնորհքը, որը տագնապ է ներշնչում: Բայց նրա միտքը միայն հավիտենական դրամաներով չի սնվում, Ազնավուրն ավելի է կրում իր ժամանակի կնիքը, քան դա թվում է հասարակությանը, այն հասարակությանը, որ ժառանգեց Ազնավուրին Պիաֆից»:

Եվ իսկապես, Ազնավուրը մեծ արտիստուհու հոգևոր ժառանգն է: Նույնիսկ մի անգամ Ազնավուրն ասել է, որ իր գլխավոր թեման՝ դահլիճում նստած մարդու պատմությունն է: Փոքր մարդու և նրա մեծ պրոբլեմների մասին է պատմում Ազնավուրը բեմից և, ինչ արած, եթե նրա հաղորդած պատմությունը միշտ չէ, որ երջանիկ ավարտ ունի. կյանքից է վերցված այն... Նրա նշանավոր «Ապրել քեզ համար» երգը, որ մի երգ-երդում է, դարձել է ֆրանսիական երգային քնարերգության դասական նմուշներից:

Ազնավուրի երաժշտության մեջ ավանդական ֆրանսիական երգի մելոսի հետ խիտ համահյուսվել են արևելյան թախծոտ, հուզող ու հմայող հնչերանգները: Արևելքի ազդեցությունը զգացվում է նաև նրա երգելու ձևի մեջ, երբ երգչի ձայնը տատանվում է, կարծես դողում է զգացմունքների հորդությունից: Ուրբ, բանաստեղծական տողերով «Եկ, արտասվիր իմ ուսին» հրաշալի երգում մենք լսում ենք պիրկ ձգված լարի այդ նյարդային թրթիռը, և Ազնավուրի կոկորդային ձայնը անորոշ մի տագնապով է լցնում սիրտը:

Ֆրանսիական երգում սովորաբար մեղեդին է կարծես հետևում խոսքին, իսկ Ազնավուրի երգերում բանաստեղծական կառուցվածքը միշտ ենթարկված է երաժշտականին: Խոսքը տարրալուծվում է երաժշտության մեջ, օրգանապես միանում նրան:

Ազնավուրը հրաշալի դերասան է: Երբ նա բեմահարթակի վրա է, վախենում ես նրա որևէ շարժումը բաց թողնել: Նա տաղանդավոր կերպով «խաղում է» յուրաքանչյուր երգը, նրա խոշոր, մուգ, արտահայտիչ աչքերը մերթ հիվանդ թռչնի աչքերի պես թախծալի են, մերթ չարաճճի ծաղրական, մերթ հրավառության պես բոցավառ, մերթ էլ հոգնած, կիսափակ:

Շատ երգեր է Ազնավուրը նվիրել արվեստին, արտիստներին: Ահա «Հին դաշնամուրը» երգը. «... մոռացված, հին դաշնամուր, վրշտերիս և ուրախություններիս դու վկա, ծերացած շնիկի պես թաքնվել ես անկյունում և տիրոջդ փաղաքշանքին ես սպասում...» Ահա հսկայական ժողովրդականություն վայելող «Նոր ռիթմով» երգը ամեն երեկո Լատինական թաղամասի մի փոքրիկ սրճարանում հավաքվող սիրող-երաժիշտ ընկերների մասին, որոնք գալիս են այստեղ սփոփանք գտնելու: Եվ այնուամենայնիվ, երևի Ազնավուրի՝ բեմին, կուլիսների կյանքին նվիրված երգերի մեջ ամենավառը «Կապույտ կոստյումն» է: Այն ինչ-որ չափով ինքնակենսագրական է, երգիչն ինքը միշտ անփոփոխ կապույտ կոստյումով է էստրադա ելնում: Արդեն տասներորդ անգամ ելույթ ունենալով «Օլիմպիայում», նա երգեց նոր՝ «Ինքնակենսագրություն» երգը, որը ժամանակի և իր մասին առաջներում

նրա գրածի սեղմ շարադրանքն է:

Չնայած փառքին ու տարիքին (նրա վաթսունն է լրացել) Ազնավուրը շատ է աշխատում, գրում է իր երգերի տեքստերն ու երաժշտությունը, հեռուստատեսության համար՝ սցենարներ, նկարահանվում է կինոյում, գրում է մյուզիքլներ: Փարիզի թատրոններում և հեռուստատեսությամբ հաջողությամբ բեմադրվեցին նրա երկու օպերետները. «Մսյո Կառնավալն» ու «Հոգին»:

Ազնավուրն իրեն «աշխատող ագրեգատ» է անվանում, «ամենաշատ աշխատող մշակներից մեկը»: Եվ թեև իրեն ագրեգատի հետ է համեմատում, ոչ մի ծրագրված, մեխանիկական բան չեք տեսնի նրա աշխատանքում, հատկապես էստրադայում: Չեք տեսնի ու չեք լսի նույն երգի երկու միանման կատարում, եթե այդպիսի բան է պատահում, Ազնավուրի համար երգը մեռնում է, այդ երգը նա դուրս է նետում իր երգացանկից: Հին երգը կատարելիս նա գտնում է բոլորովին նոր ձև, նոր հնչերանգներ, նոր շեշտեր: Վերջին տարիներին էստրադայում հանդես է գալիս ավելի զուսպ, նրա շարժումներն այժմ ավելի սահմանափակ են, խիստ, իսկ ձայնը, որը մի ժամանակ հենց ինքը «գորտի ձայն» էր անվանել, ունկնդիրներին առաջվա պես հուզում է ու հմայում:

Ազնավուրը երեք անգամ եկել է Սովետական Միություն, եղել է նաև Երևանում, որտեղ երկու հարյուր հիսուն ազգական է հայտնաբերել: Նա բազմիցս ասել է, որ հույս ունի նորից այցելել, որ Հայաստանը շատ է սիրում ու հպարտ է. որ նրա զավակն է ինքը:

Վերջին տարիներին Ազնավուրը Շվեյցարիայում է ապրում, ունի երեք որդի՝ Միշան, Կատյան, Կոլյան: Նա շատ ժամանակ է տրամադրում երեխաներին: Սիրում է նաև պարտեզում աշխատել: Տան կողքին երաժշտական տաղավար է կառուցել, որը զարդարված է երեսուն երգապնակով, նրա երեսուն երգապնակը դարձել են ոսկե երգապնակներ, երեսուն տարի Ազնավուրը հաջողությամբ հանդես է գալիս էստրադայում: Նա սիրում է առանձնանալ իր տաղավարում և նոր երգերի վրա աշխատել:

«Իհարկե,— ասում է Ազնավուրը,— խոսքն ու երաժշտությունը ես տանն եմ հորինում: Բայց ինչպես երգը ծնվում է միայն հանդիսատեսի հետ շփվելիս: Յուրաքանչյուր կատարում աշխատանք է երգի վրա: Եթե երգը սրտով ես երգում, մեխանիկորեն չես կրկնի: Ամեն անգամ այն հնչում է նորովի»:

Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

ԱՐՏԱԿ ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ

# Ցլամարտը

Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Մարտիրոսը մոլնգոց լսեց: Տավարն իջնում էր կթի, բայց մոլնգոցը խուլ, ցուլի մոլնգոց էր: Իր տավարի ցուլը չէր, Սնուկի մոլնգոցը դեռ այդքան չար ու չոր չէ:

Սա ուրիշ ցուլ է: Մտել է Սնուկի տիրույթը: Ցլամարտ է սպասվում: Ցուլերն իրար չեն հանդուրժում, մեկը մյուսի տիրույթը չպետք է մտնի, թե չէ կռիվ է:

Մարտիրոսը դուրս վազեց խրճիթից, գնաց մոլնգոցի ուղղությամբ: Օտար ցուլը նորից մոլնգաց, և Մարտիրոսը կռացած գնաց արագաքայլ, բլուրն անցավ, ներքեվում տեսավ կթի եկող կովերի ծանր իջնելը, իսկ մի քիչ հեռու՝ կարմրագորշ, արդեն արյունն աչքերը կալած, կավահող թումբը պոզահարող ցուլին:

Ցուլն զգացել էր, որ կա, ինչ-որ տեղ կա Սնուկը, սպասում էր: Հոտն առել էր, քանդում էր թումբը՝ ի սարսափ Սնուկի: Բայց ու՞ր է Սնուկը: Փախած չի լինի: Ցուլը չի փախչում, ցուլը կամ հաղթում է, կամ պարտվում:

Գետի այն կողմից, սարի լանջն ի վար իջնում էր Սնուկը: Հպարտ, գլուխը բարձր բռնած, իր ուժին վստահ՝ իջավ գետափ, առջևի ոտքերը պիրկ դրեց պաղ ջրի մեջ, դունչը վեր ձգեց, ողնաշարը պրկեց, հռոտեց օդը, նուրբ ռունգերը լայնացան: Մոլնգաց: Մոլնգոցը տարածվեց կթի գնացող կովերի մեջ, արձագանքեց դիմացի ժայռին դիպչելով, լցվեց Մարտիրոսի ականջները:

Կովերը ճանաչեցին նրա տաք, հարազատ մոլնգոցը, աչքի պոչով նայեցին գետի կողմը: Մի քանիսը կանգ առան:



Սևուկը օդում բռնեց անծանոթ ցուլի գոյությունը իր նախրի սահմաններում, թափով գետն անցավ և արագաքայլ, կովերի շղթան կտրելով հասավ Մարտիրոսին: Հասավ, անցավ, չգնաց դեպի անծանոթ ցուլը: Նրանից հեռացավ, կոխկըրտեց հազար կճղակից հունցված սարի սևահող թրքացեխը տավարի կթանիստի տեղում, քառաքայլ կտրեց-անցավ կթանիստը, դարավանդի գլխին կանգ առավ, և այստեղ մռլնգոցը փոխվեց բղագոռի՝ դաժան ու սարսռազդու: Ապա թափ առած գնաց, պոզահարեց հողը, ոտքերով քանդեց գետինն ու կանգնեց սպառնալի՝ ախոյանից մի հիսուն մետր հեռու, պատրաստ, մարտահրավեր նետած. «Եկել ես՝ արի տեսնենք ի՞նչ իրավունքով ես իմ տարածքը մտել և ինչո՞ւ»:

Կարմրագորշ հսկան կարծես դեռ չէր ուզում տեսնել Սևուկին, դեռ ավերում էր կողքի չեկ բլուրը, ամեհի, անզուսպ: Նա զգում էր իր գերազանց ուժը, չէր շտապում խոյահարել Սևուկին՝ ժամանակ էր տալիս. «Տես, ուժեղ եմ, քանի շուտ է, կարող ես հոժարակամ հեռանալ»:

Սևուկը հեռացողներից չէր: Ճակատագիրը նրան փորձության էր մղում, ու նրա ջահել արյունը փախուստ չէր ընդունում:

Մարտիրոսի մեջ կատաղություն աճեց: Նա իր Սևուկի կողմում կանգնած՝ կարմըրել էր, բազուկները պրկվել էին, բռունցքները՝ քարացել: Զգում էր, որ իր ցուլը պարտվելու է ու սիրտը մղկտում էր: Չի թողնի: Իր դռանը, իր տավարի քթի տակ Սևուկը պարտվի՞:

Մարտիրոսը դանդաղ գնաց դեպի թըշնամին: Ուսի վրայով ետ նայեց՝ Սևուկը կանգնել էր արձանացած, ջահել գլուխը առաջ մեկնած: Ավելի մոտեցավ ու մի անգամ էլ նայեց: Սևուկը դանդաղ փոխեց ոտքերը, վստահ եկավ տիրոջ ետևից:

Մարտիրոսը հարմար պահ գտավ, վըրա թռավ, բռնեց օտար ցուլի պոզերից: Մի ուժեղ ոլորք, և ցուլը կփախչի: Բազուկները լարվեցին, արյունը քունքերին խփեց, տնքաց ուժերի գերլարումից... Ցուլը մի ակնթարթ շշմած սպասեց, հետո հասկացավ, թե մարդն ինչ է ուզում, թափ տվեց գլուխը, և Մարտիրոսը պոկվեց նրանից, փռվեց մեջքի վրա: Ցուլը աչքի պոչով նայեց մարդուն և գնաց Սևուկի կողմը:

Մարտիրոսը վեր կացավ, շրջանցեց նրան: Դեռ ցուլերն իրար չէին հասել: Դան-

դաղ, կարծես սահելով մոտենում էին:

Մարտիրոսը նորից ամբողջ ուժով վրա թռավ, բռնեց ցուլի ամուր եղջյուրներից, սկսեց մռնչոցով ոլորել վիզը: Ցուլի վիզըն ամուր էր: Մարտիրոսը հասկացավ, որ սրա վիզը չի ոլորի. կամ սա իր ոլորած վզերից չէ, կամ ինքն արդեն վիզ ոլորելու ուժ չունի...

Ցուլը կատաղեց մարդու հանդգնությունից: Ցնցեց գլուխը: Գլուխն իջեցրեց, Մարտիրոսի մարմինն առավ պոզերին, վեր բարձրացրեց, թափ առավ, շպրտեց:

Մարտիրոսի գլխին աշխարհը պտտվեց, տնքաց ցավից ու մնաց փռված:

Կարմրագորշ ցուլը, մարդու հանդգնությունից չարացած՝ էլ չսպասեց, մեծ-մեծ քայլերով գնաց դեպի ախոյանը:

Սնուկը ետևի ոտքերն ամուր հենած, գլուխն առաջ պարզած՝ սպասեց հարվածին: Հարվածից ոտքերը հողը քերելով մի քանի մետր ետ գնացին, գլուխը դժժաց, բայց մնաց կանգնած, ամուր հենված հակառակորդի ճակատին:

Ցուլերը քիթ քթի փնչացին:

Սնուկը փորձեց գլուխը պոկել թշնամուց, ավելի հարմար դիրք գրավել ու թափ առնել, բայց ախոյանը փորձ ուներ, հասկացել էր, որ Սնուկը վախկոտ չէ և եթե կարողանա իրենից պոկվել, գուցե նրա հարվածին ինքը չդիմանա: Կոտոշները ագուցեց Սնուկի կոտոշներին, ըսկըսեց նրան ետ հրել դեպի դարավանդի եզրը: Սնուկը դժվար նահանջում էր: Նըրա ջահել մարմինը չէր դիմանում հսկա ցուլի ճնշմանը, նա զգում էր ետևում եղած դատարկությունը, պրկում էր ամբողջ մարմինը, գլուխն իջեցրել, հասցրել էր գետնին, պնչերը քսվում էին խոտերին, թշնամին բաց չէր թողնում: Գլուխը վեր բարձրացնել չէր կարելի. եթե գլուխը վեր տանելով ազատվեր, ախոյանի կոտոշները կմտնեին իր առջևի ոտքերի արանքը, կխոյահարեր, որպես մի անպաշտպան մսագանգված, կառներ նըրան իր պոզերի ծայրը և կշպրտեր:

...Տերը մեջքի վրա պառկած էր Ծաղկոտի աղբյուրի մոտ, ձեռքը գլխատակին, ականջը իր նորթուկ ցիկի մզմզոցին: Հորթը խրտնում էր ինքն իրենից, հորթը տրտինգ էր տալիս, պտտվում տիրոջ շուրջը, քամի առած, պոչը վեր տնկած գնում անհագնացած, իրեն ցուլ երևակայելով, գնում էր, ուր որ է հասնելու էր... Բայց ետ էր դառնում, մզզալով, անդունդի պըռունկը չհասած, ետ էր գալիս:

Մարտիրոսը մեջքի ցավից ուշքի եկավ, ճկատեց ճակատ ճակատի տված ցուլերին, տեսավ իր Սնուկի նահանջը՝ սարսափեց: Սնուկն ուր որ է գահավիժելու էր անդունդը: Քանի՜-քանի անգամ էր հորթին ետ պահել այդ անդունդի եզրից...

Սնուկը նրա հպարտությունն էր, նրա վերջին օրերի մխիթարանքը, որդու պես բան: Սնուկը նրա ապրելու կամքն էր:

Ոչ, Սնուկը պարտվելու իրավունք չունի, նա պետք է ապրի: Սնուկը ցուլ չէ, Սնուկը գաղափար է, Մարտիրոսի արյան եռքը...

Սնուկը մի անգամ էլ փորձեց խույս տալ դեպի դարավանդը գնալու հարկադրանքից, փորձեց ետևի ոտքերը շրջել դեպի վեր, բայց ախոյանը ճնշում էր խուլ, դաժան մռնչոցով, մկանները լարած, հաղթանակի բերկրանքից քթանցքները լայնացրած: Սանտիմետր առ սանտիմետր դարավանդը մոտենում էր: Մի քանի քայլ էր մնացել մինչև անկումը: Սնուկը լարեց վերջին ուժերը, վերջին ճիգով տեսավ քարի տակ մեջքի վրա փռված տիրոջը: Սնուկին թվաց, թե մի քանի վայրկյան կանգնեցրեց հակառակորդի ճնշումը, բայց հաջորդ պահին ախոյանն ավելի հզոր շարժում արեց...

Սնուկը մոլնգաց մահվան մոլնգոցով:

Մարտիրոսը փորձեց վրա նստել: Աջը հենեց գետնին, բայց մեջքի ցավը նորից գետնին գամեց:

— Ցուլս,— տնքաց Մարտիրոսը,— ցուլս կործանվե՜ց...

Սնուկը դեռ դիմանում էր: Ուղիղ դարավանդի եզրին համառ կանգնել էր ու դիմանում էր: Մայրամուտի արևը փայլում էր նրա գավակին:

— Սնու՜կ, դիմացի՛ր,— ուժերը լարելով գոչեց Մարտիրոսը:

Կենդանին լսե՞ց տիրոջ կանչը, հասկացա՞վ: Նա վերջին ճիգով մի կտրուկ շարժում արեց, գլուխն ազատեց հակառակորդի կոտոշներից ու... կողքի քաշվեց: Ախոյան ցուլը թափով գնաց, գահավիժեց անդունդը՝ լուռ ու մունջ:

Սնուկը վիզը թեքեց, նայեց ներքև, հետո եկավ դեպի տերը: Կանգնեց Մարտիրոսի մոտ, գլուխն իջեցրեց, լիզեց մեկնած ձեռքը:

— Սնուկ,— լաց էր լինում Մարտիրոսը:

Ցուլը լիզեց տիրոջ ուսը, ապա գլուխը բարձրացրեց, վիզը ձգեց, և նրա բառաչը տարածվեց ձորերում:

# Մանկության օրեր...

ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## Ոսկյա գրիչ

Որբանոցից դուրս գալուց հետո, Արծրուն եղբորս հետ, մի կտոր հաց վաստակելու համար Թիֆլիսի փողոցներում կոշիկ էինք սրբում, ջուր կամ կոնֆետ ծախում:

— Խալո՛դնայա վադա, թունե՛լնայա վադա,— բարձրաձայն ազդարարում էի, կուժը ձեռքիս անցնելով Գոլովինսկի պողոտայով: Մեկ էլ ծառուղում ոտս կպավ ինչ-որ բանի, մետաղի չրխկոց լսեցի: Կռացա ու վերցրի մի փայլուն, երկար առարկա, վախվորած այս ու այն կողմ նայեցի ու իսկույն գրպանս դրեցի:

— Արծրու՛ն, բան եմ գտել,— ասի, հասնելով եղբորս, որը քիչ հեռու անցնում էր կոնֆետի տուփը ձեռքին:

— Ի՞նչ ես գտել,— անհամբեր հարցրեց,— ցու՛յց տուր:

Վախեցա գրպանիցս հանել, անցանք մի աննկատելի տեղ, ու ես զգուշությամբ ցույց տվի գտածիս ծայրը:

Կժիս ջուրը թափեցի մայթին, ու իրեն հետ շտապեցինք տուն, ճանապարհին ինքներս ճաշակելով մեր դեռ չվաճառած կոնֆետները:

Գտածս տվի մորս, նա էլ տարավ հորեղբորս որդի Միհրանի մոտ, որը ոսկերիչ էր:

— Ոսկի՛ի, մաքու՛ր ոսկի,— ուրախ բացականչեց մայրս, վերադառնալով տուն:

Ու այդպես, վանեցու մեր տեղահանված, ամեն ինչը կորցրած ընտանիքում, հայտնըվեց մի ոսկյա իր, այն էլ՝ գրիչ: Շատ նեղ օրեր ապրեցինք, զրկանքներ տեսանք: Ինչքան համոզում էինք մեր մորը, որ վաճառելու տա ու դրանով մեր կարիքները հոգա, մնաց անդրդվելի:

— Էսա ոսկի չի, էսա բախտ ի, թող մընա, երբ իսոր արժանի տառնաս, քեզ պիտի տամ,— ասաց ինձ ու շարունակեց պահել:

Անցան շատ տարիներ. վաղուց մոռացել էի գրիչի գոյությունը: Անկողնում գամված մայրս մի օր դողդոջուն ձեռքով բարձի տակից դուրս հանեց փայլփլուն մի իր և ինձ մեկնեց:

— Ա՛ռ էսա մատիտ,— հուզված, մաշող հիվանդությունից խամրած ժպիտը դեմքին,— հիմա դու սրան արժանի ես:— Ապա գլուխս քաշեց իր մոտ, ճակատս համբուրեց, շնորհավորեց դոկտորի աստիճանի արժանանալուս առթիվ, որը տեղի ունեցավ գրիչը գտնելուց 46 տարի անց:

— Ասի սա բախտ պիտի պիրի, տեսա՞ր, որ պիրավ:

Իմ լուսահոգի՛, բազմաչարչա՛ր մայր, հայ կնոջ իսկակա՛ն տիպար, որ սրտիդ իղձը կատարելուց հետո երկու ամիս անց հեռացար կյանքից. թող քեզ հայտնի լինի, որ ես հիմա էլ ինձ արժանի չեմ համարում, տարիներ շարունակ լավ օրեր երազելով, քո փայփայած ու պահած ոսկյա գրչին: Շարունակում եմ օգտագործել սովորական գրիչներ: Ես այն սրբությամբ պահում եմ, որպես հիշատակ քո մայրական անձնվիրության, զոհաբերության ու սիրո:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹԱՔՈՒԿՅԱՆ




Լեռների մեջ ընկած մի խուլ գյուղում երկու հարևան են լինում, մեկը՝ տարեց, մյուսը՝ երիտասարդ։ Սրանք շատ սիրով հարևաններ են լինում։ Միասին գնում են անտառ փայտ կտրելու, միասին վարում են, միասին ցանում ու հնձում։

Մի երեկո դաշտից տուն դառնալիս նստում են ճանապարհին մի աղբյուրի մոտ հանգստանալու։ Երիտասարդը հանում է մի կտոր չոր հաց, աղբյուրի ակում թրջում, կիսում ու կեսը տալիս հարևանին։ Հացն ուտելով զրուցում են։ Մեկ էլ որտեղից որտեղ սարի գագաթից մի քար գլորվելով գալիս ընկնում է գյուղացիների ոտքերի առջև։

— Վա՜հ,— կանչում է տարեցը,— տես ի՜նչ լավ կլոր քար է։ Վերցրու տար տու՛ն, կնոջդ կտաս թթվի վրա կդնի։

— Չէ՛, չէ՛, ա՜յ հարևան,— առարկում է երիտասարդը,— մենք տանը թթվի քար ունենք։ Դո՛ւ տար, երեխաներդ ընկույզ կջարդեն։

Այսպես վիճում են, մեկ էլ տեսնում են, որ դա ոչ թե քար է, այլ մի մեծ կարմիր խնձոր։

— Տես է՜,— ծիծաղում է տարեցը,— մենք վիճում ենք, վիճում, բայց պարզվում է, որ սա ոչ թե քար է, այլ՝ խնձոր։ Մի նայի՛ր, թե ինչքա՜ն մեծ է, կարմիր։ Տա՛ր, պզտիկ տղադ խնձոր շատ է սիրում։

— Էլի սկսեցի՞ր,— պատասխանում է երիտասարդը,— քո երեխաները իմից շատ են սիրում։ Տա՛ր թող աղջիկդ ուտի։

Ու դարձյալ սկսում են վիճել։ Մեկ էլ խնձորը դառնում է ձմերուկ։

— Պա՜հ, պա՜հ, պա՜հ,— զարմանում են գյուղացիները,— էս ո՞նց եղավ։

— Սա իսկական քո բանն է,— ասում է երիտասարդը տարեցին,— երեկոյան հյուրեր ես ունենալու, չէ՞։ Դե տար, մի լավ պատվիր նրանց ձմերուկով։

Վիճում են, վիճում, և հանկարծ ձմերուկը փոխվում է ու դառնում մի ոսկե թագ՝ զարդարված թանկարժեք քարերով ու նախշերով։ Ա՜յ քեզ հրաշք...

Տարեցը նայում է թագին, նայում ջահելին ու ասում.

— Սա քեզ ի վերուստ է ուղարկված։ Ջահել ես, խելոք, աշխատասեր։ Դի՛ր էս թագը գլխիդ ու կառավարի՛ր աշխարհը։ Մենք հենց քեզ նման ջահել ու խելոք թագավորի կարիք ունենք։

— Հա՜, հա՜, հա՜,— ծիծաղում է երիտա-

սարդը,— համա գտա՛ր: Ինձանից ի՞նչ թագավոր՝ ո՛չ գրել գիտեմ, ո՛չ կարդալ, ո՛չ մարդավայել նստել-վեր կենալ: Իսկական թագավորացուն դու ես որ կաս՝ աշխարհ տեսած, իմաստուն, բարի, բոլորին հասնող: Թագավորը քեզ նման պիտի լինի: Դու էլ թագը գլխիդ դիր:

— Չէ՛, որդի՛, չէ՛: Իմ հայ-հայը գնացել է, վայ-վայն է մնացել: Ինձանից թագավոր դուրս չի գա: Դո՛ւ թագավորիր ու վայելիր...

Դարձյալ սկսում են վիճել:

— Ախպե՛ր,— ասում է տարեցը,— ինչո՞ւ ենք այսքան վիճում, ի՞նչ ենք կիսելու... Հարկավոր չի մեզ ո՛չ թագ, ո՛չ թագավորություն: Արի՛ սա գցենք աղբյուրի ակի մեջ, թող գնա կորչի:

— Շատ խելոք բան ասացիր,— համաձայնում է երիտասարդը,— թե չէ իզուր տեղը էսքան վիճեցինք, օրն էլ մթնեց: Գնանք հասնենք մեր երեխաներին:

Ասածն արած էր: Տարեցը վերցնում է թագը և գցում ջուրը: Հանկարծ մի որոտ է լավում ու աղբյուրի ակից հայտնվում է մի օձ՝ գլխին նույն թագը, բայց շատ-շատ փոքրացած:

Գյուղացիները վախից պապանձվում են ու կպչում իրար:

— Մի՛ վախեցեք, բարի՛ մարդիկ,— ասում է օձը,— ես այս աղբյուրի ոգին եմ: Ու ձեզ ես էի փորձում: Ուզում էի տեսնել, թե որքան ամուր է ձեր բարեկամությունը: Դուք դիմացաք փորձությանը: Որպես վարձատրություն՝ խնդրեք ձեր սրտի ուզածը:

Գյուղացիների շունչը տեղն է գալիս:

— Օ՛ձ ախպեր,— կմկմում է տարեցը,— մենք խեղճ հողագործ մարդիկ ենք, օրն աշխատող, օրն ուտող: Մի կերպ մեր ապրուստը ճարում ենք ու գոհանում: Մեզ ոչինչ էլ հարկավոր չէ: Ինչպես որ մինչև հիմա ապրել ենք, այդպես էլ կապրենք:

— Ճիշտ է,— ասում է երիտասարդը,— մենք քեզանից շատ շնորհակալ ենք, միայն թե հրաման տուր գնանք:

— Շատ լավ,— ասում է օձը,— գնացե՛ք ու հասե՛ք ձեր ընտանիքներին: Իմ կողմից էլ առա ձեզ այս նվերները: Տարե՛ք ու վայելեցե՛ք...

Ու գյուղացիների կողքին հայտնվեցին երկու սպիտակ, գեղեցիկ ձիեր՝ բարձված թանկարժեք նվերներով, ոսկով ու արծաթով:

Գյուղացիները ուզեցին շնորհակալություն հայտնել, բայց օձն աներևութացել էր: Նրանք բռնեցին ձիերի սանձերը, գնացին տուն և դրանից հետո էլ ապրեցին նույնքան սիրով, հաշտ ու երջանիկ:

ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ • 1984





«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ 1984 Թ. ԼԱՎԱԳՈՒՅՆ ԳՐԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՄՐՑԱՆԱԿԸ ՇՆՈՐՀՎԵՑ ԲԱՆԱՍՏԵՂԾ ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆԻՆ:



ՆԿԱՐԻՉ ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԸ ԱՐԺԱՆԱՑԱՎ 1984 Թ. ԼԱՎԱԳՈՒՅՆ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՄՐՑԱՆԱԿԻՆ:

# Աստղագիտական միավոր

Առօրյա կյանքում օգտագործվող երկարության միավորները չափազանց փոքր են տիեզերական հեռավորությունները չափելու համար: Այդ իսկ պատճառով աստղագիտության մեջ կիրառվում են այլ միավորներ: Դրանցից ամենափոքրը աստղագիտական միավորն է: Այն̀ իրենից ներկայացնում է Երկրի ուղեծրի շառավղի միջին չափը և հավասար է մոտավորապես 150 միլիոն կիլոմետրի: Քանի որ այդ տարածությունը լույսն անցնում է մոտ ութ րոպեի ընթացքում, ապա հաճախ ասում են, որ աստղագոտական միավորը մոտավորապես հավասար է ութ լուսային րոպեի:

Ձնայած հսկայական մեծությանը, աստղագիտական միավորն օգտագործվում է միայն մոտակա Տիեզերքում՝ Արեգակի համակարգում կատարվող չափումների համար: Իսկ աստղերի և գալակտիկաների հեռավորությունները չափազանց մեծ են և դրանց չափման համար օգտագործվում են ուրիշ, շատ ավելի մեծ միավորներ: Սակայն հարկավոր է նշել, որ և՛ մյուս միավորները, և՛ տիեզերական ամենամեծ հեռավորությունների չափումները վերջին հաշվով հիմնվում են աստղագիտական միավորի ճշտության վրա: Տիեզերական հետազոտությունների համար անհրաժեշտ է չափումների շատ բարձր ճշգրտություն: Մեր օրերում աստղագիտական միավորի չափման ճշգրտությունը հասել է ֆանտաստիկ չափերի՝ Արեգակ-Երկիր հեռավորության միջին արժեքը որոշվել է ընդամենը մեկ-երկու կիլոմետրի սխալով: Դա մոտավորապես նույնն է, եթե Երևան-Մոսկվա հեռավորությունը չափելիս սխալվենք մի քանի սանտիմետրով:

Նման ճշգրտության հաջողվել է հասնել ժամանակակից ռադիոլոկացիոն սարքերի օգնությամբ: Ընդհանրապես բավականաչափ հեշտ է որոշել Արեգակից մոլորակների ունեցած համեմատական հեռավորությունները, այսինքն, թե որևէ մոլորակ մյուսներից համեմատ քանի անգամ է Արեգակից հեռու կամ նրան մոտ. Դրա համար հիմք է ծառայում Կեպլերի երրորդ օրենքը: Դիտումների օգնությամբ կարելի է բավականին մեծ ճշտությամբ որոշել մոլորակների պտտման պարբերականությունը, նաև՝ համեմատական հեռավորությունները Արեգակից: Բավական է գտնել թեկուզ երկու մոլորակների փոխադարձ հեռավորությունը, այնուհետև կարելի է անմիջապես որոշել մյուս բոլոր հեռավորությունները:

Սհա հենց այդ նպատակով էլ օգտագործվել են ռադիոլոկացիոն սարքերը: Դրա համար դեպի Վեներա է ուղարկվել ռադիոիմպուլս, որը հասնելով այդ մոլորակին, անդրադարձել է նրանից ու կրկին գրանցվել Երկրում: Այդ ընթացքում ռադիոալիքները երկու անգամ անցնում են Երկիր-Վեներա տարածությունը: Ուրեմն կարելի է որոշել այն ժամանակը, որը ծախսում են ռադիոալիքները այդ հեռավորությունը հաղթահարելու համար, ապա այն բազմապատկել դրանց արագությամբ և ստանալ փնտրվող հեռավորությունը: Իսկ դա իր հերթին, ինչպես նշվեց վերևում, թույլ է տալիս գտնել և՛ աստղագիտական միավորը, և՛ մյուս մոլորակների հեռավորությունները:

**ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

150.000.000 ԿՄ

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ





Մի հզոր թագավոր, որը հավատում էր մոգական 9 թվի զորությանը, իր ամբողջ թագավորության սահմաններում ուներ 9 պալատ, 9 լիճ, 9 անտառ: Ծերանում է թագավորը, ընկնում անկողին և մահանում: Թագավորությունը բաժանելիս նրա 9 որդիների մեջ վեճ է սկսվում, որը քիչ է մնում ավարտվի արյունահեղ պատերազմով: Սակայն հայտնվում է մի աղքատ դերվիշ և տիրույթները այնպես է բաժանում 9 միատեսակ մասերի, որ յուրաքանչյուրում լինում են մեկական պալատ, վանք և բերդ:

Ինչպե՞ս բաժանեց դերվիշը:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

---

## «ՊԻՈՆԵՐ» № 2-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

1. Բրյուլով: 2. Բնորդ: 3. Ջրանկար: 4. Հովնաթանյան, 5. Դեկարուա: 6. Կոջոյան: 7. Գծանկար:

Ընդգծված վանդակներում կարդացվում է՝ ԲՆԱՆԿԱՐ:

## «ՊԻՈՆԵՐ» № 3-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

1. 36 թռչուն:
2. Առաջինը 300 ոչխար, երկրորդը՝ 500:
3. Ստորակետ:
4. 8 լիտրից լցնում ենք 3 լիտրանոցի մեջ և շուռ տալիս 5 լիտրանոցի մեջ: Մի անգամ էլ ենք լցնում 3 լիտրանոցը, որից 2 լիտրը լցնում ենք 5 լիտրանոցի մեջ, ուր կար 3 լիտր, դառնում է 5 լիտր, իսկ 3 լիտրանոցում մնում է 1 լիտր: 5 լիտրը նորից ենք լցնում 8 լիտրանոցի մեջ: Դատարկ 5 լիտրանոցի մեջ ենք լցնում 3 լիտրանոցում մնացած 1 լիտրը, նորից դատարկ 3 լիտրանոցը լցնում ենք 3 լիտր՝ 8 լիտրանոցից և շուռ տալիս 5 լիտրանոցի մեջ, որտեղ կար 1 լիտր, և դառնում է 4 լիտր:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Եվրոպայի ու Ամերիկայի մի քանի երկրներում գիտնականները փորձեր են անում գերության մեջ բազմացնել մի շարք վայրի թռչուններ ու ապա ազատ արձակել: Սովորական բազեն կամ նրա տարատեսակը՝ սապսանը, վերջերս լրիվ անհետացել է ԱՄՆ-ի ժայռերից արևելք գտնվող բոլոր շրջաններից այն պատճառով, որ նրանց նախկին բնակավայրերում ինտենսիվորեն պեստիցիդներ են օգտագործել: Կոռնելի համալսարանի թռչնաբանները հավաքել և ինկուբատորների մեջ են տեղավորել ձվեր, գերության մեջ թռչուններ են աճեցրել և բնական միջավայր բաց թողել մատղաշներին: Այժմ սապսանի բնական աճը մի քանի նահանգներում այլևս վտանգի տակ չէ:

Ավելի վտանգավոր վիճակում, անհետացման եզրին է գտնվում կալիֆոռնիական անգղը: Էգը տարին մեկ մի ձու է ածում: Մի անգամ թռչնաբանները հուսահատորեն հետևել են, թե ինչպես ծնողների վեճի պահին միակ ձուն բնից ընկել ու ջարդվել է, իսկ «փոխարենը» ածած երկրորդը՝ մեծ թռչունների կողմից անուշադրության մատնվելով, ագռավների բաժին է դարձել: Անգղի բնից ձուն հանելու գիտնականների բոլոր փորձերն ապարդյուն են անցել: Մինչդեռ վայրի բնության մեջ այդպիսի միայն 20 թռչուն է մնացել:

Այնքան էլ շատ ժամանակ չի անցել, երբ գիտնականները վերցրել էին մեկ այլ հազվագյուտ թռչնի՝ մավրիկյան մկնաբազեի վեց ձու, որոնցից հինգից հաջողությամբ ճտեր էին դուրս եկել: Երեքը մեծացան ու ազատ արձակվեցին:

Փոքրիկ արծիվը հանդիպում է Սլովակիայի արևելյան մասում: Էգը տարին երկու ձու է ածում, բայց ճտերից որն ավելի ուժեղ է, կըտցահարում է թույլին և փոքրաքանակ այս տեսակը հնարավորություն չի ունենում բազմանալու: Ճտերի բազմացման բացարձակ հաջող փորձեր է դնում չեխոսլովակացի թռչնաբան Յան Սվեխլիկը, որը ամեն գարնան արծվիկի 3 բնից հանում է ձվից հենց նոր ելած մեկական ճուտ, մի շաբաթ նրանց խնամում է, այնուհետև նորից տեղավորում է իրենց բներում, փոխարենը վերցնելով մյուս նոր դուրս ելած ճուտը: Այդպիսով, ամեն շաբաթ փոխարինելով մեկ ճուտը մյուսով, երկու ամսվա ընթացքում գիտնականը նրանց այն հասակին է հասցնում, որ ճտերի ագրեսիվ վարքագիծը այլևս վտանգ չի ներկայացնում:



# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## №: 4 ● 1985

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



ԱՅՍ ՏԱՐԻ ԼՐԱՆՈՒՄ Է ՀԱՅ ՄԵԾ ՆԿԱՐԻՉ
ՎԱՐԴԳԵՍ ՍՈՒՐԵՆՅԱՆՑԻ (1860—1921) ԾՆՆԴՅԱՆ 125-ԱՄՅԱԿԸ։
ՈՏՆԱՀԱՐՎԱԾ ՍՐԲՈՒԹՅՈՒՆ, 1895 Թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱ-ԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։ Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։*

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՄԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ.։

*Հանձնված է տպագրության 21.01.1985 թ.։ Ստորագրված է տպագրության 9.04.1985 թ. ՎՖ 00864։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 68552։ Պատ. 58։ Գինը՝ 15 կ.։*

***Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։***

Сдано в набор 21.01.85 г. Подписано к печати 9.04.85 г. Формат 70×100 1/16 ВФ 00864. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68552. Заказ 58. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806